

1976 ԹՎԱԿԱՆԻ ՓԵՏՐՎԱՐԻ 24-ԻՑ ՄԻՆՉԵՎ ՄԱՐՏԻ 5-Ը ԿՐԵՄԼԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐՆԵՐԻ ՊԱԼԱՏՈՒՄ ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ։

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ ՀԱՍՏԱՏՎԵՑ ԱՅՆ ՊԼԱՆԸ, ՈՐՈՎ ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԸ ՊԵՏՔ Է ԶԱՐԳԱՆԱ ՈՒ ԲԱՐԳԱՎԱՃԻ ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԸՆԹԱՑՔՈՒՄ։

ԵՐԿՐԻ 25 ՄԻԼԻՈՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԱՆՈՒՆԻՑ ԼԱՎԱԳՈՒՅՆՆԵՐԻՑ ԼԱՎԱԳՈՒՅՆՆԵՐԸ ԶԵԿՈՒՅՑ ՏՎԵՑԻՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ՝ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻՑ ՕՐԻՆԱԿ ԵՆՔ ՎԵՐՑՆՈՒՄ, ԵՐԹԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ, ՊԱՏՄԵՑԻՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԼԱՎԱԳՈՒՅՆ ԳՈՐԾԵՐԻ, ՀԵՏԱՔՐՔԻՐ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ։



# ԲԱԽՏԻ ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ԲԱՆԱԼԻՆ

*Մորս՝ ՎԵՐԺԻՆԵ ԳԵՎՈՐԳՅԱՆԻ հիշատակին*

*ԹՈՐԳՈՄ ԳԵՎՈՐԳՅԱՆ*

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

Այս ամենը, ինչ պատմելու եմ, պատահել է, երբ ես դեռ միամիտ պատանի էի ու անվերապահ հավատում էի գերբնական ուժերի գոյությանը՝ ամեն տեսակ հրաշքի ու կախարդության...

Ասեմ, որ այն ժամանակները այդ ամենին հավատում էին նաև մեծահասակները, նույնիսկ կյանքի մեծ փորձ ու փորձառություն ունեցող, նույնիսկ որոշ գրագետ, լուրջ մարդիկ:

Չգիտեմ՝ այժմ մեր երեխաները ինչպիսի հոգսեր ունեն և տոհմապահ հոգսեր ունե՞ն... Բայց լավ հիշում եմ, որ վաղ պատանեկան հասակից ինձ, ինչպես և իմ հասակակից ընկերներին սաստել, պարուրել էր հոգսը, մեր ապագայի հոգսը... Գիտակցության առաջին դրսևորումների հետ մեզ տանջում ու ճնշում էր այն հարցը, թե երբ մեծանանք, տղամարդ դառնանք, ի՞նչ է սպասում մեզ կյանքում: Արդյոք որևէ անփորձ ու դաժան աղամարդու, խազեինի հրամանի տակ չարքաշ բանվորությու՞ն, ծառա՞, թե՞...

Իմ ծննդավայրում՝ Արևմտահայաստանի Խոտորջուր գավառակում, դրությունն այնպես էր, որ դարերից ի վեր տղամարդիկ վաղ պատանեկությունից ստիպված էին դիմել պանդխտության՝ արտագնաց աշխատանքի վաստակով հայթայթելու ընտանիքի ապրուստի խոշորագույն մասը, այնպես որ ես լավ գիտակցում էի, որ իմ մայրախնամ մանկությունը շատ կարճ է տևելու և ես 12—14 տարեկանից թողնելու եմ այն ամենը, ինչ այնքան հարազատ ու սիրելի է իմ սրտին ու, անխուսափելիորեն, մեկնելու եմ օտար երկրներ աշխատելու, որպեսզի, ինչպես ինձ շարունակ հուշում էին, փող վաստակեմ, տուն-տեղ պահեմ, պետական ծանրագույն հարկերը վճարեմ և այլն, և այլն... Նաև հուշում էին, թե «Երթալ կա՝ վերադառնալ չկա. վերադառնալ կա՝ տեսնել չկա...»

Այդպիսի հոգսերից, իհարկե, զերծ էին աղջիկները: Շատ-շատ՝ նրանց մտատանջում էր այն, թե ո՞վ է լինելու իրենց փեսացուն, ո՞ւմ տունն են հարս գնալու... Այսքանը:

Ինչ թաքցնեմ, երբեմն մենք՝ տղաներս, սրտի խորքում նույնիսկ նախանձում էինք աղջիկներին:



Ամեն տեսակ սնահավատության հետ միասին մեզ մոտ նաև այն հավատալիքն էր տարածված, թե գոյություն ունի բախտի կախարդական բանալի, և ով որ գտնի այդ բանալին, նրա առաջ բացվում են հաջողության բոլոր դռները, վերանում են խոչընդոտները և, ինչպես պատկերավոր ասվում էր, եթե նա քար բռնի՝ ոսկի կդառնա...

Խորհրդավորությամբ, շշուկով ու ընձանքով գուցե և նախանձով էին ցույց տալիս մի շանիսին, որոնք պանդխտության մեջ հաջողության էին հանդիպել, հարստացել էին և անհոգ ու նոր կյանք էին վարում...

— Բախտի բանալին գտել է...— ասում էին նրանց մասին:

Եվ ինչպիսի դյութիչ, գեղեցիկ զրույցներ էին պատմում մեր բարեհոգի մամիկներն ու պերճախոս հեքիաթասացները այդ հրաշագործ բանալու մասին... Մենք՝ երեխաներս, որպիսի՜ ուշադրությամբ, հետաքրքրությամբ ու հավատքով էինք ունկնդրում այդ զարմանահրաշ զրույցները: Եվ ի՜նչ կասկած, որ ամեն երեխա երազում էր ձեռք գցել այդ հրաշագործ բանալին ու մեկընդմիշտ ազատվել իրեն տանջող հոգսերից... Մանավանդ որ, ըստ այդ զրույցների, այնքան էլ դժվար չէր բախտի բանալին գտնելը:



Բախտի բանալին գտնելու զանազան միջոցներ էին մատնանշում. դրանցից մեկը՝ կապվում էր ծիրանի ծառի ծաղկելու հետ:

Ասում էին, որ, իբր, եթե մի անմեղ տղա ականատես լինի ծիրանի ծառի առաջին ծաղկի բացվելուն, այդ պահին ինչ ուզենա, ստացված կտա իրեն...

Դրանից էլ հե՞շտ բան...

Մեր բակում կար մի փարթամ ծիրանի ծառ: Նրա մի ճյուղը մտել էր տան երկրորդ հարկի երկարավուն պատշգամբը, որը մեզ մոտ «այվան» է կոչվում: Պատմում էին, որ երբ այդ ճյուղը նոր էր երևացել պատշգամբում, մերոնք կամեցել են կտրել, որպեսզի աճելով չխանգարի անցուդարձը պատշգամբում, բայց մայրս, որ այդ ժամանակ դեռ չխոսկան հարս է եղել, կարողացել է մեծերին համոզել, որ չկտրեն, թողնեն պատշգամբում, որպես զարդ, գեղեցկություն: Եվ հետո մերոնք շատ գոհ են մնացել: Եվ իրոք՝ որքա՜ն էր նա գեղեցկացնում պատշգամբը, մանավանդ, երբ փարթամորեն ծաղկում էր ու անուշ բուրմունք տարածում: Հապա ամռա՞նը, երբ դալար ճյուղիկների վրա շարան-շարան հասունանում էին ոսկեթափիշ, հոտավետ ծիրանները...

Այդ տարին տաք ու պայծառ գարուն եղավ: Ես ամեն օր մի քանի անգամ կանոնավորապես բարձրանում էի պատշգամբը՝ ստուգելու կոկոնները և ուրախությամբ նշմարում էի, որ փոքր, սմքած ու սևուկիկ կոկոնները օր-օրի վրա ուռճանում են, մուգ կարմիր գույն առնում: Ուրեմն՝ մոտ էր ծաղկումը... Օ՜, շուտով, շատ շուտով բացվելու է ծիրանի ծաղիկն ու ես...

Ու ես, որ ընդհանրապես շատախոս ու անհանգիստ երեխայի համբավ ունեի, հանկարծ դարձել էի լռակյաց, ինքնամփոփ և օրվա մեծ մասը անցկացնում էի մեն-մենակ, պատշգամբում, իբր թե ինչ-որ խաղալիք շինելով էի զբաղված և ոչ ոքի չէի հայտնում իմ գաղտնիքը:

Այդպես անցնում էին օրերը, երբ մի առավոտ էլ ես տեսա, որ մի քանի կոկոն կարծես մեկը սուր զմելիով ճեղքել է կողքերից, որտեղից երևում էին ծիրանի ծաղկի կարմրավուն շապիկները: Ուրախությունից մի քանի անգամ գլուխկոնծի տվի ու այդ պահից այլևս ոչ մի վայրկյան չհեռացա ծիրանի ճյուղից, ընտրեցի ինձ ամենամոտ ու ամենափարթամ կոկոնը, որը անշուշտ ամենից շուտ էլ բացվելու էր, ու այլևս ակնդետ հետևեցի նրա բացվելուն: Միաժամանակ հետևում էի նաև հարևան կոկոններին... Մտածում էի՝ չլինի՞ հանկարծ նրանցից-ավելի շուտ բացվող լինի ու ես չնկատեմ:

Մի քանի անգամ ընկերներս ներքևից պայմանական սուլոցով ինձ կանչեցին խաղալու, բայց ես կտրականապես մերժեցի: Մերոնք էլ կանչեցին ճաշի, բայց ես միայն մի վայրկյան իջա ներքև, մի կտոր հաց ու տհալ (ղավուրմա) առած՝ նորից վերադարձա իմ տեղը:

Երբեմն ինձ թվում էր, թե որոշ փոփոխություն է տեղի ունեցել կոկոնների հետ, լայնացել են կողքերի բացվածքները, ծաղիկները ավելի լավ են երևում: Մարմնովս հաճելի դող էր անցնում, տարվում էի անուրջներով, ինձ երևակայում էի բախտի բանալուն արդեն տիրացած... իբր թե գնացել եմ արտասահման ուսում առել ու ահա նժույգ նըստած հաղթականորեն վերադառնում եմ տուն, խուրջինիս մեջ էլ՝ թանկարժեք նվերներ իմ թանկագին մոր ու հարազատների համար... Բայց քիչ անց համոզվում էի, որ կոկոնները դեռ նկատելի փոփոխություն չեն կրել, սխալվել եմ, ուստի շատ ընկճվում, հիասթափվում էի, սրտնեղում, բայց և այնպես շուտով վերագտնում էի ինձ ու համբերությամբ և ուշադրությամբ նորից շարունակում դիտարկումներս...

Զանազան բզեզներ, ճանճեր, մանավանդ մեղուներ մերթ ընդ մերթ այցելում էին կոկոններին, բայց առանց կանգ առնելու նորից տզզալով փախչում, հեռանում:

Վերջապես արևը մայր մտավ, հետո էլ կամաց-կամաց կապույտ երկնակամարում երևացին պայծառ աստղերը: Բայց ես միշտ զգաստ ու կենտրոնացած հետևում էի իմ գործին, շարունակում հըսկումը... Չգիտեմ որքան ժամանակ անցավ, երբ զգացի, որ հոգնում եմ ու քունս տանում է... Բայց ես մաքառում էի քնի դեմ՝ ինձ զգաստ պահում, հետևում կոկոններին...

Հետո ծագեց լուսինը և ինչ-որ թարմություն և աշխուժություն հաղորդեց ինձ, կարծես քունս փախավ, ու ես սկսեցի երգել դպրոցական երգերից.

**Ահա ծագեց լուսինն արծաթ**
**Մութ ամպերու ետևեն,**
**Ահա մակույկն ալ...**

Լուսնյակի լույսով ավելի հեշտ թվաց դիտարկումը, և քիչ հետո ես պարզ տեսա, որ մի քանի կոկոնների բացվածքները իրոք լայնացել են ու կարմրավուն շապիկները կարծես ուզում են պատռել պատյանն ու դուրս հորդել... Այդ անկասկած էր: Ամբողջ էությամբ հասկանում էի, որ րոպեներ են մնում, որ բացվի ծաղիկը և ես հասնեմ իմ նըպատակին, սակայն քունը ավելի ու ավելի էր ճընշում ինձ, չնայելով, որ թուք էի քսում աչքերիս և ուժով տրորում, բայց հանկարծ քունը մի ակնթարթ հաղթում էր և ճակատս խփում էի բազրիքին, ապա արթնանում, զգաստանում... Այդ մաքառումը որքան տևեց, չեմ հիշում... Հետո միայն իմացա, որ ես գլուխս հենած բազրիքներին՝ խոր քուն էի մտել ու մայրս ինձ գրկած, առանց արթնացնելու, տարել պառկեցրել էր անկողնում...

Առավոտյան սովորականից շատ ուշ արթնացա և հասկացա, թե ինչ է պատահել, ինչպիսի՜ դըժ-







բախտություն… Աստիճաններով վեր-վեր ցատկելով՝ անմիջապես հասա պատշգամբ ու տեսա, ի՜նչ տեսա՝ ծիրանի նյութը կեսից ավելին փարթամորեն փթթել, ծաղկել էր ու մեղուները պարսերով ամենայն ժրաջանությամբ վզզվզում էին պատշգամբում, թռչկոտում ծաղիկների շուրջը, անցնում ծաղկից-ծաղիկ, նստոտում պսակների մեջ և կարծես ինչ-որ մեղեդիներ մրմնջում…

Լա՜ց եղա, դառնագին մորմոքեցի, բայց օգո՞ւտը ինչ… Արդեն կորցրել էի իմ բախտի բանալին գտնելու առաջին հնարավորությունը…

Իհարկե, ես գաղտնիքս ոչ ոքի չբացի, չասացի, թե ինչու եմ լալիս. իսկ մերոնք ենթադրել էին, թե մեղուն է կծել ինձ…



Այն հավատալիքը կար նաև, թե յոթը թերթերև ունեցող երեքնուկը հրաշագործ հատկություն ունի, և ով որ գտնի այդպիսի երեքնուկ, նա էլ կարող է տիրանալ բախտի կախարդական բանալուն: Այդ հույսով տոգորված, ես սկսեցի փնտրել այդ երեքնուկը: Ընկերներիցս մեկուսացած, օրնիբուն ման էի գալիս առուների ափերին, պարտեզներում, մարգագետիններում և առհասարակ այն տեղերը, ուր աճում էր երեքնուկը: Երկար տևեցին իմ փնտրտուքները, սակայն միայն հանդիպում էին (այն էլ շատ հազվադեպ) 4 և 5 թերթանի երեքնուկ, իսկ 7 թերթանի այնպես էլ երբեք չգտա:



Իմ այդ փնտրտուքների ժամանակ մեր տանկից պարտեզում տեսա, որ մի բակլախայտ խոշոր օձ պատից դուրս սողաց ու ոլոր-մոլոր գնաց դեպի գերեզմանոց, որը գտնվում էր պարտեզից մի քիչ՝ այն կողմ… Անմիջապես մի նոր հույս փայլատակեց մտքիս մեջ… Չէ՞ որ օձը հուլ ունի, կախարդական, հրաշագործ հուլ, և ով որ ձեռք բերի այդ հուլը, ինչ կամենա՝ նրա զորությամբ անմիջապես կունենա…

Ինձ հայտնի էր, որ երբ օձը գիշերով դուրս է գալիս արածելու, իր հուլը դնում է մի բարձր տեղ ու նրա լույսով էլ արածում է… Այդ հավատալիքը տարածված էր ամենուրեք՝ և՛ Կովկասում, և՛ Փոքր Ասիայում, և բազմաթիվ հրաշապատում զրույց ու հեքիաթ գոյություն ունի (այժմ էլ) օձի այդ կախարդական հուլի ու նրանով բախտի հասած մարդկանց մասին: Այնպես որ ես մեծ հավատով ու հույսով սկսեցի փնտրել օձի հուլը: Ուշ երեկոյից մինչև քնելու ժամը ես նստում էի մեր տունը պարտեզից բաժանող պատի վրա և աչալուրջ նայում էի դեպի այն կողմը, որտեղից մի անգամ դուրս էր սողացել բակլախայտ մեծ օձն ու գնացել դեպի գերեզմանները: Ես ավելի քան վստահ էի, որ օձը իր հուլը բերանն առած՝ դուրս պիտի գա արածելու…

Եվ իրոք, մի քանի օր չանցած, ուշ երեկոյան այնտեղ՝ պարտեզում տեսա պծծին տվող մի կետ: Անշուշտ օձի հուլն էր լինելու… Սիրտս թունդ ելավ ուրախությունից ու առանց տատանվելու՝ թռը՜մփ, ինձ ցած գցեցի բարձր պատից, ընկա պարտեզի մեջ ու վազելվազ հասնելով պծծին տվող կետին, այն վերցրի ու որքան ուժս պատում էր ետ փախա:

Օ՜, որքան ծանր եղավ հուսախաբությունս, երբ ափս բաց արի ու տեսա, որ այդ ոչ թե օձի հուլն էր, այլ… ամենասովորական լուսատտիկ, որին մեզ մոտ «կայծոռիկ» են ասում…

Բայց այդ անհաջողությունից էլ ամենևին չընկճվեցավ բախտի բանալին գտնելու իմ ձգտումը, և ես շարունակեցի գիշերային իմ հսկումները… Եվ ահա մի գիշեր էլ տեսա, որ գերեզմանոցում, որտեղ մի օր առաջ նոր ննջեցյալ էին թաղել, շողշողում էր մի պայծառ բան, կարծես լուսնի սկավառակից պոկված մի մասնիկ լիներ… Օ՜, այդ

արդեն իսկապես հով էր, այնպես ջերմ շողշողում էր... Ես հիացած մի պահ նայում էի դեպի հույը ու ինձ թվաց, թե այն ինձ կանչում է դեպի իրեն, այնքան դյութիչ էր, անհման...

Վազելով գնացի հասա գերեզմանոցի դարպասին, բաց արի դռնակն ու... տեղնուտեղը մեխվեցի շեմին, համարձակություն չունեցա մի քայլ անգամ առաջ անցնել, մտնել գերեզմանատուն...

Ես ոչ թե վախեցա, այլ սարսռացի... Զյութի պես սև, մութ գիշեր էր: Երկնահաս բարդիները, գանգրագլուխ, վիթխարի ընկուզենիները կարծես հակված նոր հողաթմբի վրա՝ ազում էին, ինչ-որ խորհրդավոր շշուկներ էին հասնում ինձ մոտակա հինավուրց կիսավեր մատուռից, հողաթմբերն ու շիրմաքարերը անհեղի, ֆանտաստիկ ձևեր ու տեսք էին ընդունել... Ես, որ օրը ցերեկով, ժողովրդի ներկայությամբ էլ վախենում էի գերեզմանից՝ ուր մնաց, որ այդ ձյութ գիշերով, այն էլ՝ մեն-մենակ, մտնեի գերեզմանոց... Ամբողջ մարմնով դողում, դողդողում էի ու այլևս չդիմանալով ինձ պարուրած սարսափին, ետ փախա և ամենայն արագությամբ ինձ գցեցի մեր տունն ու, վերմակը քաշելով գլխիս, դառնացի լաց եղա: Ինչպե՞ս չլայի ու չսգայի, երբ այնքան մոտ էի եղել իմ նվիրական իղձերի իրականացմանը ու իմ վախկոտության պատճառով չհասա դրան: Ինչպե՞ս էի ինձ այպանում, կշտամբում...

Ես շատ ուշ իմացա, որ գերեզմանոցում իմ տեսած լույսը ո՛չ թե հուլ էր, այլ պարզ ֆոսֆոր, որը հաճախ, գերեզման փորելիս փտած ոսկորների հետ հողի երեսն է ելնում և մթին գիշերներին փայլփլում է, շողշողում:



Ըստ Խոստրջուրի զրույցների, Վարդավառի գիշերը հրաշքների գիշեր է և, իբրև թե, ուղիղ կես գիշերին մի ակնթարթ բոլոր ջրերը ցամաքում են և մեր գյուղի մեծ ջրվեժի տակի խոր ու խորհրդավոր ջրապտույտի ոսկեավազ հատակը մի ակնթարթ երևում է մարդկանց, և եթե մի անմեղ տղա ներկա լինի այդ հրաշքին, տեսնի ոսկեավազ հատակը, ինչ որ խնդրի՝ կստանա...

Հիմա էլ կպա դրան...

Վարդավառը մեզ մոտ տոնվում էր մեծ հանդիսավորությամբ, մնացած բոլոր տոներից շքեղ: Մարդիկ ներքևի գյուղերից բարձրանում էին լեռնային զով ամառանոց-ագարակները և միատեղվում՝ անցկացնելու տոնակատարությունը: Հասարակաց հաշվին նոխ կերուխում էր տեղի ունենում, նույնիսկ շրջակա հայախոս մահմեդական գյուղացիները՝ ըստ պապենական սովորության, խմբերով գալիս էին, միանում խոստրջուրցիներին, միասին քեֆ անելու... Ամբողջ օրը իրար ջրում էին զանազան հարմարանքներով, օր ու գիշեր չէի՛ն դադարում պարն ու երաժշտությունը, ձիարշավները, նշանառությունները և այլ խաղերն ու մրցումները: Ինչ խոսք, որ երեխաների համար բացվում էր զվարճության լայնարձակ ու բացառիկ ասպարեզ և նրանք անհամբեր սպասում էին Վարդավառին...

Ես էլ Վարդավառի մեծ սիրահարներից էի, ամեն տարի բարձրանում էի մեր ագարակը, բայց այդ տարի, չնայելով մերոնց հորդորներին, մնացի գյուղում, չգնացի հով սարեր... Գաղտնի խորհուրդ ունեի...

Այդ նշանավոր գիշերը ես սովորականից շուտ մտա անկողին ու անմիջապես սուտ քուն մտա ու սկսեցի խորը մշշալ: Եվ երբ մայրիկս էլ մտավ անկողին և համոզվեցի, որ արդեն քնել է, զգուշությամբ դուրս սողացի անկողնուց, անշշուկ վերցրի շորերս, մտա կողքի սենյակը, պատից իջեցրի մայրիկիս շղթայով ժամացույցն ու դողդողուն ձեռքերով բաց անելով կափարիչը՝ նշմարեցի, որ դեռ կեսգիշեր չի (մեծ սլաքը բավական հեռու էր գտնվում փոքր սլաքից), ուրեմն չէի ուշացել և ուղիղ կես գիշերին կհասնեի ջրվեժի մոտ: Ապա անաղմուկ էլ հագնվեցի, ժամացույցը դրի գրպանս ու ավելի մեծ զգուշությամբ դուրս եկա տանից ու... հայդա՜, դեպի գետափ, դեպի կամուրջը, որին մոտ էր մեծ ջրվեժը...

Արագ-արագ անցա գյուղի միջով, լո՜ւռ, կարծես սմքած էին թափուր փողոցները, հասա ջրաղացներին, որտեղ վերջանում են գյուղի տները: Տարվա այդ ժամանակ ջրաղացները չեն աշխատում, թափուր են, ուստի մի քիչ խորհրդավոր, ահռելի: Ջրաղացներից լսվում էր կատվի մլավոց ու մլավոց, բայց ես ոչ մի բանի վրա ուշադրություն չպիտի դարձնեի ու անշեղ առաջանայի դեպի իմ կետ-նպատակը: Քիչ անց ինչ-որ ոտնաձայներ լսեցի հետևիցս: «Ինձ հետապնդում են չար



ոգիները»,—անցավ մտքովս, բայց անհողդողդ շարունակեցի ճամփաս, թեև սիրտս ահ ընկավ, բայց վերհիշելով գերեզմանոցում վախենալուս հետևանքով կրած ճակատագրական անհաջողությունս, ինձ քաջալերում ու առաջանում էի, բայց նորից ոտնաձայներ լսեցի... Այս անգամ մատներս մտցրի ականջներիս մեջ, որ ոչ մի ձայն ինձ չհասնի ու վազեվազ հասա կամրջին ու շնչասպառ ընկա նրա քարքիքներին...

Նայեցի ժամացույցին ու լիալուսնի լույսով տեսա, որ չեմ ուշացել, թեև մեծ սլաքը արդեն ընդհուպ մոտեցել է փոքր սլաքին՝ ուրեմն մի երկու վայրկյան հետո կլինի կեսգիշեր, ջրերը կցամաքեն, ես կտեսնեմ ջրապտույտի ոսկեավազ հատակն ու կհասնեմ իմ նպատակին...

Անհուն երկյուղածությամբ ու հավատքով ես նայում էի ջրվեժին, որ շառաչելով, արծաթ փրփուր ու ցող ցայտելով թափվում, կորչում էր անդնդախոր, մութ ջրապտույտում: Դիմացի մայթի մշտադալար անտառներից անուշ բուրմունք էր գալիս հովի հետ, ու ինձ թվում էր, թե ամբողջ բնությունն ինձ հետ ուրախանում է ու ես լսում եմ երկնային չքնաղ մեղեդիներ, անթիվ, անհամար ծնծղաների ներդաշնակ նվագ...

Բաց ժամացույցը ձեռքիս բռնած՝ ես անհուն երջանկությամբ ըմբոշխնում էի նպատակիս հասնելու գերագույն հաճույքը, երբ, վերջապես, ժամացույցի երկու սլաքները հավասարվեցին, ուրեմն եղավ կես գիշեր... Բայց... Բայց թեև մեծ սլաքը նույնիսկ առաջ անցավ, ես այդ տեսա, ջրվեժը կանգ չառավ, գետը չցամաքեց, հրաշքը տեղի չունեցավ... Այդ պահին մի ձեռք իջավ ուսիս ու ամուր գրկեց ինձ... Ես սարսափահար ետ նայեցի ու տեսա... Տեսա իմ գորովագութ, անուշիկ մոր շարմաղ երեսը...



Մայրիկս նկատել էր իմ տարօրինակությունները ու շատ վախեցել էր: Նա ենթադրել էր, թե ես հիվանդացել եմ լուսնոտությամբ, դրա համար էլ զգուշացել էր ձայն տալ իմ հետևից, կանչել ինձ: Այն կարծիքը կար (հիմա էլ կա), որ լուսնոտին չի կարելի բղավոցով արթնացնել, որովհետև նա կարող է վախից սարսափահար լինել, լուրջ ցավագար դառնալ, այլ պետք է զգուշությամբ, անաղմուկ, հեռվից-հեռու հետևել նրան ու միայն անխուսափելի վտանգի պահին միջամտել: Այդպես էլ վարվել էր մայրիկս:

Տանը մայրիկս բարձրացրեց լամպի պատրույգը, անհուն սիրով ու կարեկցանքով ինձ նայեց.

— Ջավա՛կս, լա՛վ լսիր ինձ: Կախարդական, հրաշագործ, բախտի բանալի չկա, չի եղել: Հեքիաթ է այդ: Բախտի իսկական բանալին աշխատասիրությունն է... եղիր աշխատասեր՝ և՛ բախտավոր, և՛ երջանիկ կլինես...

Այդ պահից անցել է շուրջ յոթ տասնամյակ: Իմ կյանքը եղավ ծանր, դժվարին, անպատմելի դժվարին: Բայց ես հաղթահարեցի ամեն դժվարություն: Եվ հավատացած եմ, որ հաղթեցի, որովհետև մորս այդ վսեմ խրատները ինձ ուղենիշ դարձրի, սիրեցի աշխատանքը, հալալ աշխատանքը, որը ամենազոր է և սուրբ, ամեն բանից վեր ու վեհ:

# ՄԱՅՐԻԿԻՍ

ՍԵՐԳԵՅ ԲԱՐՍԵՂՅԱՆ

Իմ մանկության օրերին,
Այն օրերին դաոն ու թանկ,
Քո գոգնոցի փեշը հին
Ինձ սրբիչ էր ու վերմակ:
Երբ որ անձրև էր տեղում
Մեր դաշտերին ու ճամփին,
Ինձ փրկում էր անձրևից
Քո գոգնոցի փեշը հին:

Երբ արցունք էր գլորվում
Իմ մանկական թշերին,
Փարվում էի ես անզոր
Քո գոգնոցի փեշերին:
Ու ինձ այնպես է թվում,
Որ մայրական սերն անբիծ
Անբաժան է միշտ եղել
Քո հնացած գոգնոցից...

Նկ. ՎԱՆԻԿ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ



# ԻՄ ՓՈՔՐԻԿ ՏՂԱՆ

ՌԱԶՄԻԿ ԴԱՎՈՅԱՆ

Նկ. ԿԱՄՈ ԳՅԱՆՋՅԱՆԻ

Իմ փոքրիկ տղան՝
Իմ մեծ Լուսատուն,
Ասում է՝ հայրի՛կ,
Ինձ պատասխա՛ն տուր:
Ասա՛ ինձ, ասա՛,
Ջուրն ո՞ւր է հոսում,
Ասա՛ ինձ՝ արդյոք
Ջուկն ի՞նչ է խոսում,
Ասա՛ ինձ՝ քամին
Որտեղի՞ց գալիս
Եվ ո՞ւր է գնում,
Ո՞ր թփերի մեջ,
Ո՞ր քարերի տակ,
Ինչպե՞ս է քնում:
Եվ նրա քունը
Մահ չէ՞ հիրավի
Ակնթարթային,
Երբ ննջում է նա՝
Չի՞ տրվում արդյոք
Զորավոր մահին:
Կարո՞ղ է արդյոք
Երկինքն հավիտյան
Մնալ մեզ վրա,
Բայց մենք հավիտյան
Հո չե՞նք ապրելու,
Որ միշտ ունենանք
Կարիքը նրա:
Ես լսում նրա
Հարցերն անհամար



Եվ ծերանում եմ:
Դանդաղ ծերանում,
Եվ կամաց-կամաց
Նրա մտքերին
Ընկերանում եմ:
Ինքս ինձ ինչ-որ
Հարցեր եմ տալիս
Ու լուռ մտածում,
Իսկապես, արդյոք
Ջուկն ի՞նչ է խոսում,
Իսկապես, քամին
Որտեղի՞ց գալիս
Եվ ո՞ւր է գնում,
Ո՞ր թփերի մեջ,
Ո՞ր քարերի տակ,
Ինչպե՞ս է քնում:
Եվ նրա քունը
Մահ չէ՞ հիրավի
Ակնթարթային,
Երբ ննջում է նա,
Չի՞ տրվում արդյոք
Զորավոր մահին:
Եթե տրվում է,
Ինչպե՞ս է կրկին
Լույս-աշխարհ գալիս
Եվ ի՞նչ է զգում
Մահը զգալիս:





# ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ

(Ծննդյան 60-ամյակի առթիվ)

Երբ ասում են ժողովրդական գրող, ես Սերո Խանզադյանին եմ պատկերացնում։

Մեր հին գրիչների ու գուսանների շառավիղն է նա։ Միշտ մարդկանց հետ, մարդկանց մեջ, մարդկանց ուրախություններով ու հոգսերով ապրող։ Եթե կշռվի, թե Սերո Խանզադյանն ավելի շատ իր գրականությա՞մբ է օգնել ժողովրդին, թե՞ այսպես ասած՝ անձամբ, երևի նժարները հավասար լինեն։

Եթե նա վճռական ու փութկոտ քայլերով գրողների միության ամբիոնն է ելնում կամ քայլում է դեպի Մինիստրների սովետ, ուրեմն անպայման մեր ժողովրդին հուզող մի կարևոր հարց է բարձրանալու, ճանապարհ է տրվելու մի անհայտ գրողի կամ արատավորվելուց փրկվելու է մի ազնիվ անուն։

Նրա համար ինքնին գրականություն գոյություն չունի։

Նրա գրականությունը կյանքն է, ժողովուրդն է։ Եվ ոչ թե ժողովուրդն ընդհանրապես, այլ մարդը, անհատականությունը, մարդիկ, որ ժողովուրդ են դառնում։

Նրա համար ընդհանրապես բնություն ևս գոյություն չունի։ Եթե մեկ ուրիշի համար դաշտի կանաչը պարզապես խոտ է, ապա Սերո Խանզադյանը գիտե դրա հատկանիշները, գիտե ինչ բույսեր կան, որն է պետքական ու որն անպետք, որից կարելի է դեղ պատրաստել և որից՝ գույն, և նույնիսկ թե որ բույսի մասին այսինչ դարում ինչ է ասել հայ այսինչ պատմիչն ու բնագետը։

Եվ հենց այդպես էլ մոտենում է մարդկանց, հասկանում, գնահատում ու սիրում։

Բնության և մարդկային բնավորությունների հանրագիտարան է Սերո Խանզադյանը։ Եվ իր ողջ իմացածը, լսածն ու ապրածը իր տաղանդավոր, իմաստուն գրքերի մեջ մարդկանց է տվել, որ սովորեն, հարստանան։

Որ իմանան, թե որն է բարին ու ազնիվը։

Որ իմանան, թե ինչի համար պիտի կռվել ու ապրել աշխարհում։

Որ իմանան մարդկանց երջանկացնելու և դրանով իսկ երջանիկ լինելու գաղտնիքը։

*ԱՐՏԱՇԵՍ ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ*

# ԹԵ ԻՆՉՊԵՍ ԱՐՋԸ ՓԱԽԱՎ

*ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ*

— Երեխե՛ք, ես Փարունց Սերգին եմ, է՛... ինձ ճանաչո՞ւմ եք։

Այդ բանը մեզ՝ փոքրիկներիս, հարցնում է մազերը խիտ ու ճերմակ, քիթը մեծ մի պապիկ։ Նա նստած է իրենց տան դարպասի քարին, իսկ մենք դպրոցից տուն ենք գնում։

Փարունց Սերգի պապը մեզ շատ հետաքրքիր բաներ է պատմում։ Մի օր էլ պատմեց, թե ինչպես է ինքը արջին վախեցրել։

— Մի տարի արջ երևաց մեր գյուղում։ Դե՛, արջ էր, մեր հորթերը թոցնում տանում էր։ Վեր կացանք, գյուղովի զինվեցինք, գնացինք էդ անխիղճ գազանին գտնելու։

Չորս-հինգ օր սար ու ձոր ման եկանք, ամա արջի հետքն էլ չգտանք։ Տղերքը հոգնեցին, վերադարձան գյուղ։ Ես էլ գնացի Թխկուտի ձորը, ասի՝ մի շալակ փայտ առնեմ, տանեմ տուն։

Հասա Թխկուտի ձորը։ Շատ հոգնած էի, հրացանս մի ծառից կախեցի, ինքս նստեցի ծառի տակ՝ շունչս ետ բերելու։ Մի քիչ ներքևում առու կար, մեջը՝ զուլալ ջուր։ Մոտեցա ջրին, խմեցի։ Հացից-բանից ունեի, հանեցի դրի առվի եզերքին, կանաչի վրա և սկսեցի ուտել։

Հացը բերանումս էր։ Մեկ էլ՝ ըհը՛, առվի մյուս ափին, հենց դիմացս կանգնեց մի մեծ, շատ մեծ արջ։ Լեղիս փորումս ջուր կտրեց, թուքս ցամաքեց։

Հրացանս անագին հեռու էր, ծառից կախ տված: Թե վեր կենամ գնամ դեպի հրացանս, արջը մի լոք անելով կանգնի առուն, վրա կտա ու ինձ բըռնելով՝ կուտի:

Մնացի մոլոր: Ես արջին եմ նայում, արջն էլ՝ ինձ: Ես իր աչքերի մեջն եմ նայում, ինքը՝ իմ: Նայում եմ ու ահից բերանիս հացը ծամում չպըչըպացնելով: Ծամում եմ, բայց չեմ կարողանում կուլ տալ: Արջը ավելի հետաքրքրված է նայում ինձ: Տեսա, որ նրան դուր է գալիս իմ բերանի չըպչըպոցը, մի պատառ հաց էլ դրի բերանս ու սկըսեցի եռանդով ծամել:

Որ ասեմ մի ժամից էլ ավելի աչքս արջի աչքից չկտրելով, ծամում հա ծամում էի, հավատացեք: Էս արջս զարմացած, շշմած ինձ է նայում: Ես ծամում եմ, նա ինձ է նայում: Նա ինձ է նայում, ես ծամում եմ:

Մեկ էլ ինչ տեսնեմ, էս արջս վախեցած ետ-ետ է գնում: Գնա՜ց, գնա՜ց, հետո կում արեց, թըքեց իմ կողմը ու փախավ...

Ծունչս տեղը եկավ: Հիմի չգիտեմ, ծիծաղե՞մ, թե՞ լաց լինեմ: Մինչև հիմա էլ մտածում եմ՝ ախր արջը իմ ինչի՞ց վախեցավ, որ փախավ:

Փառունց Սերգի պապը ծիծաղեց.

— Է՜, դե ո՞վ իմանա արջի բանը...

# ԱՅՍ ԷԼ ՕՁԻ ՄԱՍԻՆ

Սերգի պապը նիհար մարդ է, միշտ մռայլ ու տխուր: Երբեմն կամաց, շատ կամաց երգում է, կարծես լաց է լինում:

Ամառ էր: Աշխատում էինք մեր այգում: Հայրս ինձ ուղարկեց տուն՝ աղ բերելու: Եկա, տան դուռը բաց արի ու շշմեցի: Սեղանի վրա հող է թափված և մի օձի ճուտ գալար-գալար է գալիս հողի ու փոշու մեջ: Նայեմ օճորքին ու ի՜նչ տեսնեմ, մի մեծ օձ, գլուխը գերանների արանքից հանած, անհանգիստ ներքև է նայում: Լեղապատառ դուրս թռա.

— Օձը՜, օձը՜...

Սերգի պապը իսկույն վազեց ինձ մոտ: Ես նրան մտցրի տան դռանը ու ցույց տվի սեղանին գալարվող ճուտն ու օճորքից կախված օձը: Սերգի պապը մտավ ներս, բարձրացավ սեղանին և օձի ճուտի վզից բռնելով, պոչի կողմից մոտեցրեց օճորքից կախված օձին: Սա բռնեց ճտի պոչից ու իսկույն անհետացավ...

Ես աղ վերցրի ու վազեցի դեպի այգիները:



Շոգ ամառ էր: Մենք քնում էինք մեր տան կըտուրին: Այդ գիշեր տանը ես էի ու մայրս:

Լուսադեմին էր, երբ արթնացա: Նայեցի մորս ու զարհուրեցի: Այն նույն օձը, որ կախված էր մեր օճորքից, ծալծլված նստել է մորս կրծքին՝ վերմակի վրա ու գլուխը ցցած դեսուդեն է տանում բերում՝ հետևելով մորս շնչառությանը: Մայրս խոր քնի մեջ էր ու ոչինչ չէր զգում:

Լեղապատառ դուրս եկա անկողնուց, կտուրից ցած թռա ու ինձ գցեցի Սերգի պապի մոտ:

— Սերգի պա՜պ, ա՛յ Սերգի պապ, էսպես, էսպես...

Սերգի պապը իսկույն եկավ, բարձրացավ մեր կտուրը, չոքեց մորիցս մի քիչ հեռու ու սկսեց կամաց, շատ կամաց երգել: Օձը գլուխը թեքեց դեպի նա ու դանդաղ իջնելով մորս կրծքից, հեռացավ, մտավ պատի ճեղքը...

Սերգի պապը գնաց, ինձ պատվիրելով այդ մասին մորս ոչինչ չասել:

Մայրս արթնացավ: Ինձ սաստիկ նախատեց, որ ես վեր եմ կացել, իսկ իրեն չեմ արթնացրել, որ գնանք այգիները գործի:

Բայց ես նրան ոչինչ չասացի օձի մասին:






ՌՈՒԲԵՆ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Նկ. ԿԱՄՈ ԳՅԱՆՋՅԱՆԻ

Մեր գյուղից ինձ հայտնեցին, որ մեռել է Մարիամ տատը: Մեռել է՝ օր առաջ կանխազգալով մահը: Երեկոյան լողացել է, հագել է հարս օրերի ճերմակ շապիկը, հրաժեշտ է տվել թոռներին, հարսներին, ծոռներին ու անկողին է մտել իբր քնելու, բայց մեռել է:

Նա գուցե հարյուր տարեկան էր, գուցե՝ ավելին. ոչ ոք ստույգ չգիտեր նրա տարիքը: Չգիտեմ որ թվականից սկսած՝ նրա տարիքն այլևս չէր ավելանում, անցնող տարիներն իրար չէին գումարվում: Համենայն դեպս ինձ համար Մարիամ տատը վերջին տարիներին նույն տարիքի էր, ինչ այն ժամանակ, երբ մենք՝ այսօրվա հասուն տղամարդիկս, գիժ ուլերի նման ոտնատակ էինք անում գյուղի բանջարանոցները, փայտե սրերով գլխատում էինք կաղամբները, նորատունկ անտառում ռոբինհուդյան խրախճանք էինք սարքում, ռազմական ամենախելական խորհրդակցություններ էինք հրավիրում ստորգետնյա մեր «բունկերում» և ամեն մեկս մի-մի Դոն-Քիշոտ դարձած, հարձակվում էինք նախկին սպանդանոցի կիսավերակ պատերի վրա:

Մենք վայրենի տղաներ էինք: Մեզ վռնդում էին բանջարանոցներից, բակերից, նորատունկ անտառից, խոսքերը մեկ արած բոլորն ուզում էին մեր միջից հանել խենթությունը, ուզում էին ընտելացնել, ինչպես երևի գիժ ուլերին են ընտելացնում:

Մեր միակ պաշտպանը Մարիամ տատն էր: Նա մեր խենթությունները ընդունում էր այնպես, ինչպես ծառերի ծաղկումն էր ընդունում, ամպերի գոռգոռոցը, առվի քչքչոցը, տաքուկ թխսկանի տակ դարսված հավկիթների ճաքճքոցը...

Նա այն բախտավոր մարդկանցից էր, որ կենդանության օրոք արդեն քայլում էր առասպելների ուղեկցությամբ:

Ասում էին, թե նա հմայանքով է զբաղված, կախարդ է:

Նա կարողանում էր բուժել օձի խայթոցը, զանազան հիվանդություններ, գիտեր, թե որտեղ է բուսնում այս կամ այն բանջարը, ծաղիկը, երբ է ձյուն գալու, անձրև, որ տարին է չորային լինելու, որ մարդն է չար, որը՝ բարի...

Նրա կովը ամենակաթնատուն էր գյուղում, նրա հավերը ամենախոշոր ձվերն էին ածում, նրա այգում հասունանում էին ամենաքաղցր մրգերը:

Այդպես էր, բայց նա կախարդ չէր: Նա մեծ իմաստուն կին էր: Նա կովի, հավերի, ծառերի հետ վարվում էր այնպես, ինչպես մեզ հետ էր վարվում:

Նա գիտեր բնությունը, գիտեր կյանքը: Նա գիտեր, որ եթե ճահճուտից տզրուկ ես ուզում որսալ, ապա պիտի կըտրես մատդ, որ արյան հոտի վրա մոտ գան դրանք: Իսկ մարդիկ կարծում էին, թե նա հմայում է տզրուկներին: Չգիտեմ ինչու մենք հավատում էինք նրա շուրջ պտտվող միայն մի առասպելի: Մարիամ տատը նկուղում միշտ փակ էր պահում իր սնդուկը, որի մեջ ըստ այդ առասպելի, անհամար գանձեր կային: Հավատում էինք, երևի այն պատճառով, որ մեր ընկերը՝ Մարիամ տատի թոռը, նույնպես հավատում էր գանձի գոյությանը: Նա մեզ մանրամասն նկարագրել էր սնդուկի չափսերը, գույնը, կողպեքի ձևն ու մեծությունը և խորհրդավոր բանալին, որ շղթայիկով, խաչի նման միշտ կախված էր տատի վզից: Իսկ սնդու՜կը բորբոքում էր մեր երևակայությունը...

Թաղման հաջորդ օրը, երբ ես պատրաստվում էի քաղաք վերադառնալ, ընկերս՝ Մարիամ տատի թոռը, ինձ իրենց նկուղը տարավ:

— Հիշո՞ւմ ես,— ասաց,— գյուղում խոսում էին տատի գանձերի մասին:

— Հիշում եմ,— ասացի:

Ընկերս ինձ ցույց տվեց առասպելական սնդուկը, տատի վզից հանած շղթայիկով բանալին, հնաբայական կողպեքը:

Սնդուկի ներսում Մարիամ տատի շորերն էին և ընդամենը մի եռանկյունաձև ծրար, ռազմաճակատից չվերադարձած որդու վերջին նամակը, ծրարի մեջ՝ չորացած տերև:

Դա նամակ էլ չէր. հապճեպ գրված երկտող էր.

«Ներիր, մայր, ծաղիկ չգտա: Հրաշքով փրկված մենավոր մի կեչի կա միայն, որի տերևն էլ ահա, ուղարկում եմ քեզ»:

Ես և ընկերս զգուշորեն ծրարի մեջ կրկին փակեցինք Մարիամ տատի գանձը:

# ՏԱՐՕՐԻՆԱԿ ՀՅՈՒՐԸ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Զայն եմ լսում ես հանկարծ.
— Թի՛կ, թա՛կ,
Դուռը բա՛ց:
— Ո՞վ է,— հարց եմ տալիս ես:
Շշնջում է.
— Բացի՛ր, տե՛ս:
— Ո՞վ ես, ասա՛ իմանամ,
Որ քո առջև դուռ բանամ:—
Նա փչում է և հազում,
Հառաչում է և ասում.
— Ես քամին եմ, տուն չունեմ,
Գիշեր-ցերեկ քուն չունեմ,
Ես գալիս եմ անց սարից,
Բա՛ց քո դուռը, նե՛րս առ ինձ:—
Հոգնած քամուն մեր սարի
Ես ասում եմ՝ ներս արի:
Բայց դեռ խոսքը բերանիս՝
Նա խփում է սեղանիս,
Խլում թե՛ գիրք, թե՛ տետրակ,
Պատուհանից նետում բակ:
Ու խառնելով ամեն բան՝
Շարունակում իր ճամփան:
Ես լսեցի գիժ քամուն,
Հավատացի, խղճացի,
Տեղ տվեցի և իսկույն
Իմ արածը զղջացի:






ՎԻԿՏՈՐ ԲԱԼԱՅԱՆ

— Մե՛կ... երկո՛ւ... երե՛ք...— անհամբեր հայացքները հառած ավազանի ալեկոծվող ջրին, հաշվում էին պիոներները:

Ավազանին մոտեցող մարդը կարող էր միայն ծիծաղել նրանց վրա, որովհետև ջրում ոչինչ չէր երևում, իսկ նրանք, նայելով տատանվող ալիքներին, շարունակում էին հաշվել.

— Չո՛րս... հի՛նգ...

Հանկարծ ջրի տատանումն ուժեղացավ և ավազանի կենտրոնում ջրի միջից դուրս ցցվեց մի գանգրահեր գլուխ: Համարյա թե նույն վայրկյանին ավազանի ափին պայթեց պիոներների ուժեղ ծիծաղը: Ընկերները ծիծաղում էին պարծենկոտ Օսիկի վրա, որը չկարողացավ ջրի տակով ավազանի մի ծայրից մյուսը լողալ: Երբ Օսիկը շնչակտուր ջրից դուրս եկավ, նրան մոտեցավ Մայիսը.

— Քեզ հազար անգամ եմ ասել, որ ցատկիր՝ թեք, թևերդ ձգած, սուզվելուց հետո հորիզոնական դիրք ընդունիր և դանդաղ արտաշնչելով՝ առաջ լողա: Դու հո փոքր չե՞ս, 5-րդ դասարանի աշակերտ ես. պետք է շուտ ըմբռնես: Քո հասակում ես սարեր էի շուռ տալիս,— հանդիմանում էր Մայիսը:



ԴՆԵՐ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Երբ բոլորը հեռացան, Օսիկին մոտեցավ փոքրիկ Սամվելը։

— Հիմա սկսե՞նք,— հայացքը Օսիկին հառելով, հարցրեց Սամվելը։

— Ի՞նչ սկսենք... Ես ի՞նչ գիտեմ, որ քեզ...

— Բա դու ասացիր, որ շուտով բակի չեմպիոնն ես դառնալու։

— Մեծ-մեծ մի՛ խոսիր,— վախեցած շուրջը նայելով՝ պատասխանեց Օսիկը,—որ այդքան ուզում ես սովորել, լավ, արի՛ սովորեցնեմ...

Անցան օրեր... Ավազանի շուրջը նորից հավաքվել են հետաքրքրասեր պիոներները։ Օսիկը հպարտ կանգնած նայում է իր աշակերտին։ Իսկ աշակերտը հազալով, աչքերը ջրակալած, ջրի վրա կախված ճյուղերի օգնությամբ դուրս է գալիս ավազանից, մեղավորի հայացքը հառած Օսիկին։

Երբ մոտեցավ, Օսիկն սկսեց նախատել.

— Հազար անգամ եմ քեզ ասել, որ նախքան ջուրն ընկնելը, ջուրը ներշնչիր, ցատկիր թեք, թեվերդ ձգած, ստզվելուց հետո հորիզոնական դիրք ընդունիր ու դանդաղ արտաշնչելով՝ առաջ լողա։ Քո հասակում ես սարեր էի շուռ տալիս...

1975 Թ. ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ



«Պիոներ» և «Միծեռնակ» ամսագրերի 1975 թ. լավագույն գրական ստեղծագործության մրցանակը շնորհվեց արձակագիր Ազատ Այվազյանին՝ «Ալիկը», «Երկար ու կարճ ականջներ», «Ամպը», «Թոփը», «Լեոնույը» պատմվածքների համար։



«Պիոներ» ամսագրի դեկտեմբեր ամսվա շապիկի, «Գարունը եկավ զառներիՙ հետ» հերիաթի և «Ես քաջիկն եմ» բանաստեղծության նկարազարդման համար նկարիչ Կարեն Միքայելյանը արժանացավ 1975 թ. լավագույն նկարչական աշխատանքի մրցանակին։

# ԱՇՏԱՐԱԿ

*ԱԼԲԵՐՏ ՇԱՀԱԶԻԶՅԱՆ*

Ձեզանից ո՞վ չի լսել հայ ժողովրդի վաղուց սիրած, նվիրական այս երգը.

**Ա՜խ, թռի՛ր, ծիծեռնակ,**
**Մնաս տեղս՝ Աշտարակ:**

Այդ երգը ո՞ւր ասես չի հասցրել Աշտարակի անունը, որը Հայաստանի հնագույն բնակավայրերից է, նրա գեղատեսիլ վայրերից մեկը:

Եկեք մենք էլ, ծիծեռնակի հետքերով գնանք Աշտարակ: Հազարամյա առուն բռնած մտնենք Քասախի ձորը, լողանանք գետի պաղպաջուն ջրերում, վայելենք բնության պարգևները, ծանոթանանք հին ու նոր հուշարձաններին, մարդկանց կյանքին ու աշխատանքին:

Գնանք: Այնտեղ այգիների ցանկապատերի ետևում այնքան հրճվանք կա պահված ձեզ համար: Մրգերի համը ծըտերից ու երեխաներից պետք է հարցնել: Այնտեղ ծիրան ու սալոր կա շատ, հյութալի տանձ ու խնձոր, թթվաշ սերկևիլ ու նուռ և, գիտե՞ք ինչ... «Ոսկեհատ» խաղող, որի նմանը ուրիշ ոչ մի տեղ չեք գտնի: Ջուր հո չե՞ն երգում.

**Աշտարակի խաղող ես, վազիդ մատաղ:**

Դե, էլ ո՞ւմ ենք սպասում: Երևանի ավտոկայանից նըստենք ավտոբուս: Գնացինք: Ընդամենը կես ժամվա ճանապարհ է: Ահա վերջանում են Աջափնյակի բարձրահարկ շենքերը, նրանց առջև փռված խաղողի հին այգիները: Դուրս ենք գալիս մայրաքաղաքի հյուսիսային դարպասից: Մեր դիմաց փառահեղ Արագածն է՝ իր ձյունապատ չորս գագաթներով: Եվ ապա նրանից մի փոքր աջ՝ Քասախ և Հրազդան գետերի միջև, դաշտի ծայրին միայնակ կանգնած Արայի լեռը: Դա ժողովրդի սիրած Ծաղկեվանը սարն է: Ավանդությունը պատմում է, որ հայոց թագավոր Արա Գեղեցիկը Ասորեստանի թագուհի Շամիրամի դեմ պատերազմելու ժամանակ այստեղ է բանակել և նրա պատվին լեռը կոչվել է Արայի:

Հիանալի ճանապարհ է: Երկու կողմից անվերջանալի սուրում են մեքենաները, իսկ մեջտեղը ձգվել է ծաղկավառ մի կանաչ գոտի: Ճամփեզրի ժայռաբե՛կորների վրա կարմիր, խոշոր տառերով ողջերթի և բարի գալուստի խոսքեր են գրված: Պայմանական նշանները վարորդներին զգուշացնում են շրջադարձերի, վտանգավոր տեղերի մասին, հայտնում ուղղությունը և հեռավորությունը: Թալին-Մարալիկ - Լենինական: Դեպի աջ՝ Ապարան-Սպիտակ-Կիրովական: Դեպի ձախ՝ Էջմիածին-Հոկտեմբերյան: Աշտարակը կարևոր մայրուղիների հանգուցակետում է գտնվում, մեծ անցուդարձի ճամփաբաժանում:

Եվ այսպես, Երևանը մնաց ետևում: Գեղատեսիլ Արագած լեռն է մեր դիմաց և նրա ոտքերի տակ փռված այս հրսկայական սարահարթը, որ այդպես էլ կոչվում է՝ ոտն Արագած կամ Արագածոտն: Ճանապարհի երկու կողմում նորատունկ այգիներ են և մեզ ուղեկցող բարդիների անվերջանալի շարքը:

Մի տաս-տասնհինգ տարի առաջ, փուշ ու տատասկ էր այս հարթավայրում, քար ու քռա: Օձեր ու կարիճներ էին սողում քարերի մեջ: Իսկ հողը, ծարավից ճաքճքել էր հազար տեղով: Կյանք չկար, շունչ չկար: Գարնան ծիլը շուտով խամրում էր թեժ արևի տակ: Հազարավոր տարիներ դաշտը լալիս էր ջրի կարոտից:

Շինարարները, ժայռեր ճեղքելով, ձորեր կամրջելով, Արզնու ձորից հանեցին Հրազդանի ջուրը դեպի վեր: Դաշտում ճյուղավորվելով, մայր ջրանցքը ծփանք տվեց օր ու գիշեր՝ մի ծայրից մյուսը: Մոտ հարյուր կիլոմետր՝ մինչև Շամիրամ գյուղը: Եվ ջրանցքը այդպես էլ կոչվեց՝ Արզնի՛-Շամիրամ: Ապրեց ջուրը առուներում և կենդանացրեց դաշտը: Հիմնըվեցին և դեռ հիմնվում են նոր սովխոզներ և նոր ավաններ՝ Արայի, Սասունիկ և այլ անուններով: Ամեն տարի հազարավոր տոննա խաղող ու միրգ է տալիս իր տեսքը փոխած, այգիներով շենացած Արագածոտն հարթավայրը:

Դաշտի եզրով, խոր ձորում հոսում է Արագածի ձյուներով սնվող Քասախ գետը: Նրա բարձրադիր ափերին, աջ և ձախ կողմերում տարածվել է Աշտարակը՝ Հայաստանի պարտեզը, Հայաստանի այգին: Այդպես է գրել նրա մասին նշանավոր գրող Մարիետա Շահինյանը, երբ շրջել է Աշտարակի զմրուխտ այգիներում,

ճաշակել պարտեզների անուշ միրգն ու պտուղը։

Այո՛, գյուղատնտեսական շրջանի կենտրոն է Աշտարակը և, միաժամանակ, հանրապետության արագորեն աճող ու զարգացող քաղաքներից մեկը։

— Ե՞րբ է հիմնվել և ինչո՞ւ է կոչվում Աշտարակ,— անպայման կհարցնեք դուք։

Բայց ո՞վ կարող է ստույգ պատասխան տալ։ Աշտարակի պատմությունը, Քասախ գետի ակունքների պես, կորած է հեռավոր ժամանակների մշուշում, անհիշելի դարերի խորքում։ Աշտարակի անունը , առաջին անգամ հիշատակվել է Բջնո վանքի մի ժամագրքում, մեզանից հազար տարի առաջ։ Մոտավորապես այդքան ժամանակվա պատմություն ունի նաև հին գյուղի մայր առուն, որ կառուցվել է Գևորգ Վարդապետ Ակնանատեսի օրոք։ Բայց նա գոյություն է ունեցել մեր թվարկությունից էլ առաջ։ Մինչև այսօր էլ, Ծուխոնց ձորի պռնկին, բարձր ժայռի վրա մնում են Սպիտակավոր կոչվող մատուռի հետքերը, ուր մարդիկ հեթանոսական դարերում, մեզանից երկու հազար տարի առաջ, զոհեր են մատուցել։

Նույն այդ տեղում, բարձր պարիսպներով, կիսավեր վիճակում, կանգուն է դեռ 5-րդ դարում կառուցված Ծիրանավոր բերդը։ Թաղը, որտեղ տասնյակ հարյուրավոր տարիներ ապրել են մարդիկ, կոչվում է Բերդաթաղ։ Դա հին գյուղն է, որ, ով գիտե, գուցե հենց իր բարձր դիրքի համար էլ կոչվել է Աշտարակ։ Բայց դա կարող է շատ ու շատ ավելի հին անուն լինել, որ աղավաղվել է ուրարտական ժամանակներում, երբ դեռ նոր էր կազմավորվում հայ ժողովուրդը։

Շրջանի հնագույն Արուճ գյուղի սեպագիր արձանագրությունից իմանում ենք, որ մեր թվարկությունից շատ առաջ այստեղ ապրող ցեղերին նվաճել են խալդ-ուրարտացիները։ Նրանք վերջնականապես հաստատվեցին այստեղ իրար հաջորդող՝ Մենուա, Արգիշտի և Ռուսա 1-ին թագավորների արշավանքների ընթացքում։ Արուճը հազար տարի առաջ եղել է հայոց Արշակունի թագավորների ձմեռանոցն ու զորակայանը։ Իսկ նրանից ոչ հեռու գտնվող Աղց գյուղը՝ ննջեցյալների հանգստարան, որտեղ թագավորներն են թաղվել։ Մի քիչ այս կողմ, այժմ նշանավոր Բյուրականի աստղադիտարանից վերև, Ամբերդ ամրոցն է, որը միջնադարում եղել է Բագրատունիների, իսկ հետագայում Զաքարյանների անառիկ բերդը։

Հին-հին դարերից հիշատակ որքան հետաքրքիր ու նմանը չունեցող հուշարձաններ կան այս հինավուրց ու պատմական, փոքրիկ հողակտորի վրա։ Եթե դուք չգիտեք, ապա ձեր ծնողները կամ պապիկները լավ կիմանան Տեղերի, Կոշի, Հովհաննավանքի, Սաղմոսավանքի, ուրարտական առուների, «վիշապների» և այլ հուշարձանների ու հնությունների մասին։ Դրանք մեր ժողովրդի դարավոր պատմության կենդանի վկաներն են, որոնք աչքի լույսի պես պիտի պահպանենք։ Դրանց մեջ ամենաթանկագինն ու նվիրականը հայ գրերի ստեղծող Մեսրոպ Մաշտոցի գերեզմանն է։ Նա թաղված է Աշտարակից վեց կիլոմետր հեռու, Օշական գյուղի եկեղեցու խորանում, Քասախի բարձրադիր ափին, գետի հովիտենական օրհներգության տակ։

Իսկ Քասախը, որ ջուր է տալիս Ապարանի, Աշտարակի և Էջմիածնի հողերին, 90 կիլոմետր ճամփա կտրելով, խոր ձորերի միջով դուրս է գալիս Արարատյան դաշտ, խառնվում Մեծամոր գետի ջրերին։ Նշանավոր են Օշականի և Աշտարակի հինավուրց կամուրջները, հիմա էլ կանգուն են դրանք, թեև 300 տարուց ավելի է անցել այդ ծիրանագույն երեք կամարների վրայով...

Քասախի կամուրջից մի փոքր ներքև, պատմական Ավազաղբյուրն է, որի շնորհիվ Աշտարակի բոլոր երեխաները լող տալ գիտեն։ Այստեղ մի օր, 130 տարի առաջ, դպրոցների տեսուչ Խաչատուր Աբովյանը հանկարծ Շապուհ վարժապետի կամքի, լողացել է աշակերտների հետ, որոնց մեջ էր նաև ապագա վիպասան Պերճ Պռոշյանը...

Ձորում, անմատչելի ու բարձր ժայռերի մեջ քարայրներ կան, ուր թշնամիներից պաշտպանվելու համար թաքնվել են գյուղի բնակիչները։ Բայց ահա, այդպիսի մի օր, գեղեցիկ Վարթիկը չի հասցնում ճախարակով վեր բարձրանալ և ընկնում է թշնամիների ձեռքը...

— Ասա՛ ձերոնց տեղը և մենք քեզ չենք սպանի,— պահանջում են նրանից։

Դրան ի պատասխան, աղջկա ձայնը զրնգում է ձորում.

**Ա՛յ ձորի մարդիկ,**
**Անունս է Վարթիկ,**
**Ինձ տեսեք, լացեք,**
**Բայց լավ տափ կացեք։**

Մինչև օրս էլ, Վարթիկի շիրմաքարը եղծված գրերով մնում է ձորում։ Իսկ լեգենդը բերնեբերան անցնում է սերունդից-սերունդ։

Կամրջից վերև, մի բարձունքի վրա, հպարտ կանգնած է Հայաստանի նշանավոր կառույցներից մեկը՝ Կարմրավոր փոքրիկ եկեղեցին, եզակի մի հուշարձան։ Նրա գլխի վրա-

յով, ինչպես ամպի ստվեր, ավելի քան հազար երեք հարյուր տարի է անցել, բայց մի աղյուս անգամ չի ընկել կղմինդրե ծածկից: Այդպես լավ են պահպանվել Մարինե եկեղեցին և ուրիշ հուշարձաններ ու խաչքարեր, որոնք կառուցվել են հետագա դարերում: Մի խոսքով, իսկական թանգարան՝ բաց երկնքի տակ: Ասենք, մեր ամբողջ Հայաստանն է այդպես կոչվում:

Աշտարակը հայտնի է նաև որպես նշանավոր մարդկանց ծննդավայր: Գիտության, մշակույթի և հասարակական-քաղաքական կյանքի ականավոր գործիչներ՝ Ներսես Աշտարակեցին, Պերճ Պռոշյանը, Սմբատ Շահազիզը, Գրիգոր Ղափանցյանը, Նորայր Սիսակյանը այս գեղատեսիլ բնության մեջ են կյանք առել: Աշտարակից ոչ հեռու, Փարպի գյուղում է ծնվել հինգերորդ դարի նշանավոր պատմիչ Ղազար Փարպեցին: Այսքանով, իհարկե, չի ավարտվում Աշտարակի անվանի մարդկանց շարքը: Պռոշյանի տուն-թանգարանում շատ բան կիմանաք:

**Աշտարակ ցանկալի...**

Այսպիսի սրտառուչ բառերով է վերջանում նրա մասին հյուսված երգերից մեկը: Իրոք, քաղաքում հարյուրամյակների ընթացքում շատ քիչ փոփոխություն կրած այս հնագույն բնակավայրը անճանաչելիորեն փոխվեց այս վերջին տասնամյակների ընթացքում: Սովետական կարգերի շնորհիվ, մեր ավերված երկիրը վերածնվեց մոխիրների միջից և ամեն ինչով դարձավ բարեշեն, հարուստ, առաջնակարգ տնտեսություն ունեցող հանրապետություն:

Ահա, ձեր աչքերի առաջ է հին Աշտարակը՝ Բերդաթաղը իր նեղ փողոցներով, իր կավածեփ խարխուլ տներով՝ ժայռի գլխին թառած: Չմոռանանք ասել, որ փողոցները զարմանալիորեն այդքան նեղ էին նրա համար, որպեսզի թշնամիների ներխուժման ժամանակ, կտրատված ծառ ու ճյուղերով փակեն նրանց ճանապարհը... Էհ, այդ ամենը պատկանում է տխուր անցյալին: Նայեցեք ձեր շուրջը, տեսեք Աշտարակ քաղաքը ինչպես է զուգվել-զարդարվել վարդագույն, բազմահարկ շենքերով, ուղիղ ու լայն փողոցներով: Նայեցեք պարտեզների ու այգիների մեջ սուզված գողտրիկ առանձնատներին: Տեսեք, թե մինչև ուր է տարածել կանաչ թևերը Քասախի աջ և ձախ ափերին փռված քաղաքը: Ուզո՞ւմ եք ավելի լավ տեսնել, խնդրեմ, բարձրացեք «Մուղնու թառը», հյուսիս-արևելյան բարձունքը, և ձեր աչքերի առջև կբացվի քաղաքի սքանչելի համայնապատկերը:

Ծովի մակերևույթից 1130 մ բարձրության վրա, 450 հեկտար տարածություն զբաղեցնող քաղաքը ամբողջովին սուզվել է պարտեզների ու այգիների կանաչության մեջ: Վերջին տները դրկիցներ են օշականցիներին: Հենց այդ սահմանագծի վրա էլ գտնվում է «Խերես» գինու գործարանը, որը արտադրում է մեծ պահանջարկ ունեցող «Աշտարակ» և «Օշական» մակնիշի ընտիր գինիներ:

Աշտարակը գիտության ու արդյունաբերության քաղաք է: Արայի և Սասունիկ սովխոզների բանվորական ավաններից բացի, բարձրացել է մի նոր թաղամաս՝ Երևանյան մայրուղու և գետի ձախ ափի երկայնքով: Հիանալի առանձնատների հետ միասին, անընդհատ կառուցվում են նաև պետական խոշոր շենքեր: Նոր հանրախանութ, բաղնիք, պիոներպալատ, ավտոկայան, տրիկոտաժի ֆաբրիկա... Այս ափին են գտնվում նաև Սովետական Հայաստանի գիտությունների ակադեմիայի ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի ու ֆիզիկական հետազոտությունների ինստիտուտները: Մի տասը կիլոմետր հեռու, Արագածի լանջին, բարձունքում փայլում է աշխարհին հայտնի Բյուրականի աստղադիտարանի արծաթագօծ գմբեթը: Հայ աստղաբաշխները հայտնագործություններ են կատարում այնտեղ: Նրանց ղեկավարում է աշխարհահռչակ գիտնական Վիկտոր Համբարձումյանը:

Անդունդի վրա կապած նոր կամուրջը մի հսկայական կամարով երկու ափերը միացրել է իրար՝ քաղաքի հարավարևմտյան կողմում: Քասախը դարձել է «միջքաղաքային» գետ: Հենց կամուրջի մոտ, ձախ ափին, ուր սոսափում է Կոմիտասի անվան դալար պուրակը, Հայրենական մեծ պատերազմում զոհվածների հուշարձանն է: Պատկառազդու մի կառույց է դա, որի խոնարհված գրանիտյա սյուների միջև բոցկլտում է հավերժական կրակը:

Կամուրջից ոչ հեռու, աջ ափին, այգիներով շրջապատված, ֆուտբոլի մարզադաշտն է: Նրա դիմաց շրջանային հիվանդանոցն է: Կողքի հսկայական շենքը դպրոցն է: Քաղաքում գործում են հինգ միջնակարգ, հեռակա և երեկոյան, երաժշտական և սպորտ դպրոցներ: Մոտ չորս հազար սովորողներ, երեք հարյուր ուսուցիչ: Մշակույթի պալատ, կինոթատրոններ, ակումբ-գրադարաններ, մսուր-մանկապարտեզներ, թանգարան, արտադրական կոմբինատ և այլ ձեռնարկություններ...

Քաղաք, հազարամյա հողի վրա առանց աղմուկի, առանց փոշու: Առողջարար օդի, անուշահամ մրգերի, սառնորակ ջրերի, բերք ու բարիքի, առատության մեջ:

**Անդ շինիր քո բույնը**
**Հայրենի կտուրի տակ:**

«Ծիծեռնակ» երգի անուշիկ տողերն են սրանք:

# ԵՐԳ

ԻԳՆԱՏ ՄԱՄՅԱՆ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Դաշտե՛ր,
Դաշտե՛ր ձյունապատյալ,
Ձեր արևոտ ձյուներից
Ես առնում եմ ծաղկի բույր:

Ծառե՛ր,
Ծառե՛ր ճռվողուն,
Իմ սրտի մեջ ձեր երգի
Տաք հնչյուններն են դողում:

Ծառե՛ր,
Ծառե՛ր բողբոջուն,
Ես ձեր խոնավ ճյուղերից
Գարնան կարոտ եմ շնչում:

Շուտո՛վ,
Շուտո՛վ աշխարհում
Նորից
Գարուն կլինի,
Եվ արևը սարերում
Կանաչ գորգեր կհինի:

# „ԽՈՍՈՂ" ԾԱՌԵՐ

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*(Կենսաբանական գիտությունների դոկտոր)*

Ո՞վ չի լսել անտառի ձայնը՝ տերևների սոսափյունը, ճյուղերի հառաչը... Ռոմանտիկները հավատացնում են, որ իրենք երբեմն լսում են, թե ինչպես են աճում շիվերը, ինչպես է շնչում անտառը: Տայգայի անտառային բացարձակ լռությունը հաճախ խախտվում է գեղեցիկ նվագ հիշեցնող ինչ-որ ձայներով. ասեղնատերևներն են պարում մեղմ քամու տակ, իրար քսվող ճյուղերն են ձայն արձակում, իսկ անտառի նախապետները խուլ տնքում են հարյուրամյակների ծանրության ներքո: Սակայն այս բոլորը սովորական անտառային աղմուկ է: Իսկ իրենք ծառերը ինքնուրույն կերպով ընդունա՞կ են ձայն արձակելու:

Դեռևս մի քանի հազարամյակ առաջ մեր նախնիները նկատել են, որ արևելյան սոսու ծառերը նույնիսկ այն դեպքում, երբ օդը միանգամայն անշարժ է, ընդունակ են խորհրդավոր ձայներ արձակելու: Կարծես թե ծառի յուրաքանչյուր տերևը շշնջում է, փսփսում, ինչ-որ բան է ասում իր հարևան տերևին: Դա այնքան խորհրդավոր էր, որ հեթանոս նախահայրերը պաշտամունքի առարկա դարձնելով սոսու ծառերը, միաժամանակ մեծ ակնածանքով փորձում էին հասկանալ... ծառերի լեզուն: Հեթանոս քրմերը ունկնդրելով այդ ձայնին, սիրում էին գուշակություններ անել երկրի ապագայի, մարդկանց բախտի վերաբերյալ: Այդ մասին վկայություններ կան պատմահայր Մովսես Խորենացու «Հայոց պատմությունում»:

Իսկ ինչպե՞ս են խաղաղ, անհողմ եղանակին սոսու տերևները ձայներ արձակում: Պարզվում է, որ սոսու հսկայական ծառի սաղարթի ներսում ջերմաստիճանի տարբերություն գոյություն ունի: Սաղարթի ներքին, գետնին մոտ գտնվող մասում օդը արագորեն տաքանում է գետնից ստացված ջերմության շնորհիվ և դանդաղորեն բարձրանում դեպի սաղարթի վերին մասը: Այստեղ շփվելով համեմատաբար սառը տերևների հետ, սառչում է և կրկին իջնում ցած: Դրա շնորհիվ սաղարթի մեջ առաջանում են օդի հոսանքներ, որի հետևանքով էլ անընդհատ շարժվում և «փսփսում են» տերևները: Այդպիսի հատկություն ունեն նաև էվկալիպտի տերևները:

Ալեքսանդր Հումբոլդտը գրում է, որ Ամազոնի անտառներում երբեմն կուսական լռությունը խախտվում է ինչ-որ խլացուցիչ որոտներով: Շատերն այդ բանը վերագրում են թնդանոթածառին, որի բնի վրա հաստ, ճոպանանման ելուստներից կախված են 10—18 սմ տրամագիծ ունեցող խոշոր գնդեր: Քա-



մու դեպքում այդ գնդերը հարվածում են բնին և իրար, որից իսկական թնդանոթային համազարկի տպավորություն է ստացվում: Բուսաբաններ Սպրուսը և Բլոսսֆելդը եկել են այն համոզման, որ դրա պատճառը արտակարգ արագ աճող հյուսվածքներն են, երբ բարձր ջերմաստիճանի և խոնավության ազդեցության տակ ծառի բնի ենթակեղևը սկսում է աճել այնպիսի արագությամբ, որ մնացած հյուսվածքները չեն հասցնում աճել նույն ձևով: Դրա հետևանքով ենթակեղևը ներսից պայթում է և առաջանում են այդ տարօրինակ ձայները:

Ականատեսներից մեկը պատմում է, որ մի անգամ Չինաստանում, տեղավորվելով Յանցզի գետի ափին գտնվող հյուրանոցում, առավոտյան վաղ բամբուկի անտառից լսել է ինչ-որ սարսափելի ճիչեր, լացի ձայն և բարձր հեկեկոցներ: Խիստ վախենալով, նա արթնացրել է իր ուղեկցին, վերջինս հանգիստ կերպով նրան բացատրել է, որ նման ձայներ են արձակում գիգանտ բամբուկի բուռն կերպով աճող երիտասարդ շիվերը, որոնք իրենց համար ճանապարհ են հարթում ամուր խաշամի և տերևապատյանների միջով: Տաք, խոնավ առավոտյան բամբուկը աճում է անսովոր արագությամբ, որից և առաջանում են այդ տարօրինակ ձայները:

Արևմտյան Աֆրիկայում պաշտամունքի առարկա է դարձել «խոսող ծառը» (եսներա կալանթա): Նա ով համարձակվի կտրել այդ ծառը, կենթարկվի խիստ պատժի: Մարդիկ հսկայական գումարներ են մուծում այդ ծառի տակ նստելու թույլտվություն ստանալու համար, որպեսզի ծառին պատմեն իրենց հոգսերի մասին և մի քանի տերև պոկեն նրանից որպես համայիլ (ամուլետ) պահելու համար: Ծառի նկատմամբ այդ ակնածանքը առաջացել է այն պատճառով, որ ծառը անընդհատ ինչ-որ քրթմնջոցներ է արձակում, որոնք շատ նման են մարդկանց սովորական խոսակցությանը: Խաղաղ օվկիանոսյան Բուգենվիլ կղզում է գտնվում «հեկեկող ծառը» (սուրայուա պուրգենս): Ինչպես պատմում են տեղացիները, բույսի ծաղիկները բացվելիս սովորաբար արձակում են հեկեկոց հիշեցնող ինչ-որ հնչյուններ: Կենտրոնական Աֆրիկայում աճում է աշխարհի ամենագեղեցիկ «շշնջացող ծառը» (պարինարիում մոբոլա), որը շշնջոցի նման ձայներ է արձակում, երբ այն կտրում են: Բացի այդ, գարնանը, երբ սկսվում է հյութաշարժը, ծառի բունը ջրի կարկաչ հիշեցնող ձայներ է արձակում:

Ամռան շոգ օրերին անցնելով հացահատիկի դաշտերով, դուք երևի հաճախ ինչ-որ անսովոր ճարճատյուններ եք լսել: Դրանք բույսերի հասունացած պտուղներն են բացվում, որոնք աղմուկով չորս կողմի վրա են սփռում իրենց սերմերը: Հասունացման շրջանում պտուղների հարուցած աղմուկը հազվադեպ երևույթ է բարեխառն գոտում: Սակայն դա սովորական երևույթ է արևադարձային ու մերձարևադարձային անտառների համար, որտեղ բույսերի պտուղները մեծ մասամբ անսովոր չափով խոշոր են և բացվելիս բավականին ուժեղ աղմուկ են առաջացնում: Նրանց սերմերը, որոնք թռչում են երբեմն մի քանի տասնյակ մետր և բավականին խոշոր են, իրենց թռիչքի ընթացքում կարող են անախորժ դեպքերի պատճառ հանդիսանալ:

Արևադարձային անտառների անխոնջ հետազոտող Գայը պատմում է, որ ինքը և իր ուղեկիցները ջունգլիներում հաճախ շփոթված կանգ են առել, մոտակայքում լսելով ատրճանակի կրակոցներ: Միայն շատ ժամանակ հետո նրանց հաջողվել է պարզել, որ դրա պատճառը բաhիկիա և բրախիստեգիա բույսերն են, որոնց պտղատուփերը բացվելիս նման ձայներ են արձակում: Ինչպես պնդում են բուսաբանները, «ամենաաղմկոտ» բույսը մշտադալար հուրա կրեպիտանսն է: Երբ հասունանում են հուրայի սերմերը, դրանց պտուղը պայթում է, սերմերը շառաչյունով շպրտելով մինչև 60 մետր հեռավորության վրա: Բուսաբան Մերի Բարրետը այդ բույսը անվանում է «չափազանց վտանգավոր», որը ծակում է, թունավորում և կրակում»: Գրականության մեջ երբեմն հուրան անվանվում է նաև «կապիկների զոնգ», քանի որ պտուղը բացվելիս գոնգի ուժեղ ձայն է արձակում: Հուրայի պտուղները և սերմերը խիստ թունավոր են ու վտանգավոր մարդկանց ու կենդանիների համար:

Վերջին տարիներս ավելի շատ տեղեկություններ են ստացվում այն մասին, որ բույսերը անտարբեր չեն ձայնային տատանումների նկատմամբ: Շատ հետազոտողներ գտնում են, որ երաժշտության տակ նկատելիորեն ուժեղանում է բույսերի աճը: Արևմտյան Ավստրալիայի Պերտե քաղաքում լույս տեսնող ծառերի բարեկամների ընկերության Բյուլետենում (հուլիս, 1963) նշվում է, որ միսսիս Բրաունը նոյեմբերից սկսած ամեն առավոտ կես ժամ տևողությամբ համերգ է տվել իր այգու բուսականության համար և հավատացնում է, որ արդեն 10 օրից հետո դրանց աճը և ծաղիկների գունավորումը զգալիորեն բարելավվել են: Բանջարեղենի և անգամ մոլախոտերի աճը ևս նկատելիորեն ուժեղացել էր: Միսսիս Բրաունը հավաստիացնում է, որ ձայնային ալիքները ինչ-որ ձևով ներգործում են բույսերի վրա, ուժեղացնում ածխաջրածնային սննդառությունը և նպաստում ծաղկմանը: Ծաղիկներին, ըստ երևույթին «դուր է գալիս» ջութակի ձայնը: Բանջարեղենները գերադասում էին ավելի ցածր տոնի հնչյուններ:

Բուսաբան Շաֆֆերը «Զարդնես խրոնիկլե» ամսագրի 1964 թվականի սեպտեմբերի 5-ի համարում գրում է, որ Հնդկաստանի գիտնականները Մադրասի նահանգում դաշտային փորձեր են կատարում ուսումնասիրելու ձայնային ալիքների ազդեցությունը բույսերի աճի ու զարգացման վրա: Բրնձի դաշտերի համար բարձրախոսից հատուկ երաժշտություն էր հաղորդվում: Ինչպես նշում են գիտնականները, երաժշտության «դասեր» ստացած դաշտերի բուսականությունը զգալիորեն ավելի բարձր բերք է տալիս, քան այն բուսականությունը, որը երաժշտություն չի լսել: Այդ փորձերը դրվել են այն բանից հետո, երբ Հարավային Հնդկաստանի Աննամալայան համալսարանի բուսաբանական ֆակուլտետի ղեկավար դոկտոր Սինգխը հաղորդեց, որ ռիթմիկ ձայնային ալիքները զգալիորեն խթանում են բույսերի աճին:

Սակայն այս ուղղությամբ գիտությունը դեռևս նախնական քայլեր է անում միայն և ստացված արդյունքները դեռևս մանրամասն ստուգման կարիք են զգում: Մի բան միայն պարզ է, որ բույսերը ըստ երևույթին անտարբեր չեն ձայնի նկատմամբ:



# ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ԱՅԲՈՒԲԵՆԸ

Բ. ՍԵՐԳԵՅԵՎ
*(Կենսաբանական գիտությունների դոկտոր)*

Նկ. ԿԱՄՈ ԳՅԱՆՋՅԱՆԻ

Գիտնականները ենթադրում են, որ դիմախաղը և ժեստերը մեր հեռավոր նախնիների կողմից օգտագործվել են, նախքան հնչյունային խոսքի երևան գալը, իբրև ինֆորմացիայի փոխանակման միջոց: Թեպետև աղքատ ու պարզունակ, բայց, ըստ էության, դա արդեն լեզու էր: Եթե մեր նախնիները կարողացել են դիմախաղի և ժեստերի օգնությամբ բացատրվել, ապա հնարավոր չէ, որ կենդանիները նույնպես զրուցում են իրար հետ: Եթե այդպես է, ապա ինչի՞ մասին են նրանք խոսում:

Կենդանիները ինչքան ասես առիթներ ունեն ինֆորմացիա փոխանակելու: Ձագուկները պետք է ճանաչեն ծնողներին, իսկ ծնողները՝ զանազանեն ձագերին: Մեծ ընտանիքի կամ մի ամբողջ հոտի անդամները պետք է ծանոթ լինեն մեկը մյուսին: Սխալներից խուսափելու համար, նրանք իրար հատուկ նշաններ են անում, յուրատեսակ նշանաբան: Երբ նույն տեսակի երկու կենդանի են հանդիպում, նրանք այցետոմսեր են փոխանակում: Ոհմակի պահապանները որևէ արարած տեսնելիս, զգուշանում են, տագնապի ազդանշան տալիս: Եթե մոտեցողը իրենց ոհմակից է, ապա ազդանշանը հարցի պես է հնչում՝ ո՞վ է գալիս, և նա շտապում է տարբերիչ նշանով պատասխանել:

Այցենշաններ ունեն և՛ թռչուններ, և՛ ուժեղ շատ կենդանիներ: Էգ վագրը երբ իր որջն է վերադառնում, ցածր և կարճ փռընչոց է արձակում «ուո՜ւֆ»: Կենդանաբանները այն անվանում են «վագրի ողջույն»: Նշանը տրվում է փոքրիկ վագրերին հանգստացնելու համար: Կենդանաբանական այգիներում վագրերն այդպես են ողջունում իրենց հարևան վանդակների կենդանիներին և իրենց խնամող սպասավորներին:

Ամբողջ երկրագնդով մեկ տարածված, ոչ մեծ, ամրակազմ կոկռանը արու ձկնկուլի համար այցետոմս է ծառայում նրա սեփ-սև ծոծրակը զարդարող երկար, նուրբ փետրիկներից բաղկացած փունջը: Երբ հայր-կոկռանը խիտ ճյուղերի միջով բույնն է գնում, անընդհատ խոնարհումներ է անում, և բնում նստած ընկերուհին կամ ձագերը առաջին հերթին փետրափունջն են տեսնում: Եթե հոգնած հայրը բավականաչափ եռանդ չի գործադրում խոնարհվելիս կամ բոլորովին մոռանում է տարբերիչ նշանը ներկայացնել, սեփական ընտանիքը միահամուռ կերպով նրան դիմավորում է զայրույթով և մի լավ գզգզում է նրան: Ծնողին ճանաչելու ուրիշ միջոց նրանք չունեն: Բնի մոտերքում պատահական կերպով հայտնված կողմնակի արուն ոչ մի դեպքում խոնարհումներ չի անի: Կոկռանների հարևանությամբ ապրող ուրիշ ոչ մի թռչուն նման այցետոմս չունի: Սխալները բացառված են:

Ամուսնական շրջանում զույգերով ապրող թռչունների մեծամասնությունը իրար ձայնով են ճանաչում: Իր բույնը վերադարձող ծովածիծառը դեռ հեռվից իր մոտենալու մասին ազդանշան է տալիս: Ողջույնի նշանները բոլոր ծովածիծառների մոտ նույնն են, բայց ծնողների թռչնային հավաքատեղիի բազմաձայն աղմուկի մեջ նույնիսկ իրար ճանաչում են ձայնի անհատական առանձնահատկություններով, ինչպես մենք ձայնով տարբերում ենք մեր մտերիմներին ու բարեկամներին: Կենդանիների մեծամասնության համար անձի ճանաչման կամ անցագրի դեր է կատարում հոտը: Խմբերով ապրող միջատների՝ մրջյունների, տերմիտների ու մեղուների ամեն մի մեծ ընտանիք իր սեփական հոտն ունի: Այդ հոտն էլ անարգել մուտք է ապահովում դեպի սեփական տունը: Թռչունները ընդունակ են իրար դեմքով տարբերելու: Եթե դեմքը ծածկված է ճյուղով կամ ներկված է, զույգերն իրար չեն ճանաչում:



Շատ կարևոր են փոխադարձ ազդանշանները, երբ կենդանիները ծանոթանում են իրար: Գարունը ընտանիք կազմելու ժամանակն է: Այդ շրջանում թռչուններն ու գազանները լայնորեն օգտվում են այցետոմսերից: Չվող թռչուններից գարնանը ամենից առաջ հյուսիս են վերադառնում արուները: Գտնելով անցյալ տարվա իր հողամասը, թռչունն սկսում է ապրել այնտեղ, ժամանակի մեծ մասը տրամադրելով ձայնային վարժություններին: Արուի ձայնի վրա (թռչունների մեծամասնության արուներն են կարողանում միայն երգել) թռչում են մարիները: Նրանք դեռ հեռվից ձայն են տալիս: Եթե անցյալ տարվա ընկերուհին դանդաղի, կարող է բնում իր տեղը զբաղված գտնել: Արուն կարող է ընդունել յուրաքանչյուր անտուն կամ առաջին անգամ ընտանիք կազմող մարուն: Ամուսնական շրջանի այցետոմսերն անպայման ինֆորմացիա են պարունակում այն մասին, թե ո՛ր տեսակին և սեռին է պատկանում կենդանին: Արտաքին նմանություն ունեցող կենդանիների համար դա շատ կարևոր է. խառն ամուսնությունները սովորաբար անզավակ են մնում:

Թռչնի երգը շատ գեղեցիկ անցագիր է: Մարիները ավելի համեստ, բայց նույնպես հեշտ հիշելի նշանաբան ունեն: Հնչյունային նշանաբան ունեն նույնիսկ անձայն թռչունները: Փայտփորիկները գարնանը ծառի չոր բնի վրա իրենց կանչող դայլայլներն են թրխկթրխկացնում: Լսելով «հեռագրային հաղորդման հաճախականությունը», մարին, նույնիսկ







«փեսացուին» չտեսած, ճշգրիտ գիտե. ի՞ր տեսակից է նա, թե՞ ոչ: Օտարի մոտ նա չի թռչի: «Յուրայիններին» երգի ռիթմով են ճանաչում նաև ծղրիդները:

Թռչունների արուների մեծամասնությունն ավելի վառ գունավորում ունի, քան մարիները: Դրանք յուրօրինակ այցետոմսեր են, որոնք ցույց են տալիս նրանց սեռը: Եթե հագուստի մեջ աչքի ընկնող տարբերություն չկա, կենդանիները դիմում են հատուկ ազդանշանների: Դաշտային փայտփորիկի արուն և մարին իրարից տարբերվում են միայն բեղերի գույնով: Մարիները սև են, արուինը՝ կարմիր: Ծանոթանալիս նրանք առաջին հերթին իրենց բեղերն են ցույց տալիս և, եթե պարզվում է, որ դրանք նույն գույնի են, հիասթափված տարբեր կողմեր են թռչում:

Թռչուններ կան, օրինակ՝ մեր բադերը, որոնք սեռը ցույց տվող տոնական զգեստը հագնում են միայն գարնանը: Այդպես են վարվում նաև տրիտոնները, որոնք գարնանը մեծ, վառ գունավորված կատար են ունենում: Տարվա մյուս եղանակներին տարբերիչ նշաններ պետք չեն. վառ գունավորումը միայն խանգարում է քողարկվելուն և գիշատիչների ուշադրությունն է գրավում:

Բևեռային ճնճղուկի արուն բնատեղի իր հողամասը գրավում է ձյունը հալվելուց դեռ շատ առաջ: Ընտրելով ամենաբարձր գլաքարը կամ բարձրանալով ձյունակույտի վրա, նա երգում է առավոտից մինչև երեկո, մերթ ընդ մերթ օդում բարձր թռիչքներ կատարելով: Դրանց նպատակն է՝ մարիին նկատելի դարձնել իր տեղը: Բանն այն է, որ ճնճղուկները ունենալով նուրբ լսողություն, անհասկանալի պատճառներով չեն կարողանում ձայնի ուղղությունը որոշել: Եթե բնատեղի է գալիս ուրիշ արու, տեղանքի տերը ցած է թողնում թևերը և մարտական «պի-փի» ձայներ արձակելով՝ գետնատարած հարձակվում հակառակորդի վրա: Նույնպիսի դիրքով են դիմավորում արուները մեկ ամիս ուշ հյուսիս վերադարձած մարիներին: Սակայն համոզվելով, որ իրենց առջև թույլ սեռի ներկայացուցիչ է, արուն շուռ է գալիս մեջքով, լայնորեն բացում թևերն ու պոչը, որպեսզի իր ճերմակասև փետրավորումը լավ երևա: Սրանով նա մարիին հասկացնում է, որ ինքը բարեկամ է և թշնամական մտադրություններ չունի:

Թռչող միջատների համար անցագիր է ծառայում ծվոցը կամ բզզոցը, որոնք առաջանում են թևիկների աշխատանքից: Ըստ որում թևաբախումների հաճախականությունը մեծ մասամբ նույնն է, և միջատները խստորեն դա պահպանում են, հատկապես ամուսնական շրջանում: Մոծակների էգերը՝ դեղին ջերմախտ տարածողները, վայրկյանում 450—600 թևաբախում են անում: Արուները ձայնը զգում են միայն 25 սմ հեռավորությունից: Էգերի տեսքը նրանց ամենևին չի հետաքրքրում: Հենց որ էգերը դադարում են թևիկները թափահարել, արուները նրանց նկատմամբ հետաքրքրությունը կորցնում են: Ինֆորմացիան, որը թևաբախումներով հաղորդում են այս մոծակները, այնքան էլ ճշգրիտ չէ: Աշխարհում մոծակ ինչքան ասես կա, և նրանցից մի քանի տեսակը թևաբախումների միատեսակ հաճախականություն ունի: Դրա համար էլ, ձայն լսելիս, մոծակը թռչում և հոտոտում է օդը: Հոտը ավելի որոշակի ձևակերպված անցագիր է:

Թռչունները և երկկենցաղները բնակավայրի են տիրանում և պահպանում այն միայն ամուսնական շրջանում: Շատ չորքոտանիներ տերիտորիան իրենցն են դարձնում ամբողջ կյանքի ընթացքում: Հյուսիսամերիկյան գրիզլի արջը տասնհինգ կիլոմետր տրամագծով տարածություն է զբաղեցնում: Գայլերի ընտանիքի սահմանները ավելի մեծ են: Բնակավայրի համար կենդանիների միջև հաճախ կատաղի կռիվներ են ծագում: Երբ գիտնականները մանրամասն ուսումնասիրեցին այդ երևույթը, համոզվեցին, որ այդ կռիվներն հազվ են տեղի ունենում: Դրանք ձեռնտու չեն ոչ բնակավայրի տերերին, ոչ էլ իրենց համար բնակատեղի որոնող անտեր կենդանիներին: Որպես կանոն՝ տերերի փոփոխություն տեղի չի ունենում, ուրեմն՝ կռիվներն էլ ավելորդ են: Բայց ինչպե՞ս խուսափել դրանից: Շատ պարզ. անհրաժեշտ է միայն լայնորեն տեղեկացնել եղբայրակիցներին, որ դու մտել ես քեզ չպատկանող բնակավայրի տիրոջ իրավունքների մեջ, և ներխուժումներ չեն լինի: Դեպի բնատեղերը վերադարձած թռչունների գարնանային երգերը ոչ միայն ընկերուհիներին կանչող ազդանշաններ են, այլև լայնահաղորդ հայտարարություններ տերիտորիալ հավակնությունների վերաբերյալ: Չնայած տերերը սովորաբար ջանում են տեղյակ պահել հարևաններին իրենց գրաված հողամասերի չափերի մասին, ներխուժումներ, այնուամենայնիվ, ժամանակ առ ժամանակ լինում են: Այսպիսի դեպքերում ավելի խելամիտ է գլխապատառ կռվի մեջ չնետվել, այլ՝ խնդրել անկոչ հյուրին, որ քանի ուշ չէ՝ հեռանա: Կենդանիների մեծ մասն այդպես էլ անում է: Այս հարցում ճարտարորեն են գործում հատկապես թռչունները:

Չորքոտանի կենդանիները իրենց գրաված բնակավայրերի սահմանները նշում են արձակած հոտի սյուներով: Հոտ արձակող «սահմանային սյուները» պահպանվում են մի քանի օր: Շատ կենդանիների հոտ արձակող նյութերը մշակվում են հատուկ գեղձերի միջոցով: Հնդկական փղերի այդ գեղձերը գտնվում են ականջի առջևի մասում: Ջունգլիներում զբոսնելիս, փղերը ականջով քսվում են ծառերին, որպեսզի թողնեն իրենց հոտը, իբրև նշան, որի օգնությամբ ընտանիքի անդամները հեշտությամբ գտնեն իրար: Եղջերուների այդ գեղձիկները տեղավորված են աչքերի շրջակայքում: Այդ նշանները կենդանիները թողնում են ծառաքներին, քթին հասանելի բարձրության վրա: Հաջողվում է դա հատկապես սամույրին՝ իր որսատեղի սահմանները նշելիս: Նրա հոտ արձակող գեղձերը գտնվում են ոտնաթաթերին: Սահմանային նշանները սամույրը դնում է քայլելիս, նշում է ոչ թե իր գրաված բնակավայրի սահման-





ները, այլ՝ որսատեղի արահետները:

Վայրի ճագարները նույնպես իրենց հողամասերի սահմանները նշում են թաթիկներով, բայց դա շատ ավելի բարդ է: Հոտ արձակող գեղձ միայն արուները ունեն և այն գտնվում է կզակի վրա: Այս հանգամանքը էլ դժվարացնում է նշաններ թողնելը: Նշաններ դնելուց առաջ անհրաժեշտ է լինում առջևի թաթերի տակերը քսել գեղձից արտահոսող հեղուկին: Դրա փոխարեն, մի կես օր վազվզելուց և թաթերը խոտերին ու հողին քսելուց հոգնած տուն վերադառնալով, էլ վախ չես ունենա, թե շատ նկատելի հետք ես թողել: Կայվածքի տեր լինելը, սեփական տուն ունենալը կարևոր է յուրաքանչյուր կենդանու համար: Սահմանագծերը անցած կենդանին իր նոր տան մեջ վստահ և լավ չի զգում:

Ինֆորմացիայի փոխանակման շատ անհրաժեշտություններ են լինում հատկապես միևնույն ընտանիքի կամ հոտի անդամների միջև: Երեխաները պետք է կարողանան իրենց դաստիարակներին հասկացնել, որ իրենք քաղցած են: Դեռատի ճայերը առանց այլևայլության ձգում են իրենց ծնողների կտուցները, ստիպելով վերջիններիս կերակրել իրենց: Փոքրիկ թռչնակների անօգնական ճտերը զգալով ծնողների մոտենալը, լայն բացում են բերանները, ձգում են նիհար վզիկները և ծերերի պես տարուբերում են գլխիկները՝ հաճախ կառչելով ճղճվալով: Պարզ է՝ ուտել են ուզում: Մութ փչակներում, որտեղ վաղ մանկությունը են անցկացնում շատ թռչուններ, կարող են բաց կտուցները չնկատվել: Դրա համար ձագուկներից շատերը բերանի խոռոչում սպիտակ եզրանգներ ունեն: Ծնողների համար կարևոր է՝ ճտերին ուտելու հրավիրելը: Մեզնից յուրաքանչյուրը գոնե մի անգամ տեսած կլինի, թե ինչպես է ճտերին ուտելիքի կանչելիս՝ հավը բարձրաձայն կչկչում: Նույնը կարողանում է անել նաև աքլորը: Ուտելու համար որոնք կանչերը ծանոթ են շատ թռչունների: Բադիկներին դրանց պետք ծառայություն են մատուցում: Որսորդները կարողանում են իրենց ձայնը նմանեցնել նրանց ձայնին, և միամիտ կրնկրուկները ճշտությամբ որսվում են: Ճտերը լավ են ճանաչում իրենց ծնողների ձայնը: Եթե կողք-կողքի երկու ընտանիք են ապրում, ճուտիկները պատասխանում են միայն իրենց մայրերին: Մոր ձայնը մտքում պահելն այնքան էլ հեշտ չէ: Ճուտիկն այն ուսումնասիրում է կյանքի առաջին ութ օրում: Ավելի ուշ հնարավոր չէ:

Բոլոր կենդանիները պետք է իմանան տագնապի ազդանշանները: Դրանք տարբեր են: Ուշադրության ազդանշանը տրվում է, երբ դեռ հայտնի չէ վտանգի մեծությունը: Ամբողջ ոհմակը կանգնում է՝ շուրջը հոտոտելով և համակ ուշադրություն դարձած, մինչև որ ավարտի ազդանշանը տրվի: Ուժեղ ու չար կապիկները՝ պավիանները մի ազդանշան ունեն, որով դուրս են կանչում հասուն արուներին՝ ոհմակի հանգիստը խանգարած կենդանուն դեմհանդիման: Եթե վտանգը մեծ է, փախուստի ազդանշան է տրվում, և ոհմակը ցիրուցան փախչում է: Տագնապի ազդանշանը ավելի շատ ձայնային է լինում: Բայց դա պարտադիր չէ բոլորի համար: Միջատները իրենց արձակած հոտով են ազդանշան տալիս: Մրջյունների տագնապի ազդանշանը շատ հեռու չի տարածվում, ընդամենը 10—20 սանտիմետր, բայց այդքանն էլ բավական է, որպեսզի ամբողջ մրջնանոցն իրար անցնի: Հոտային ազդանշանները նրանով են հարմար, որ ճշգրիտ ցույց են տալիս վտանգի վայրը: Մի շարք ձկներ իրենց ձագերին տագնապի ազդանշան են տալիս որոշակի դիրք ընդունելով: Փոքրիկները շատ ուշադիր են: Նրանք անմիջապես թաքնվում են տեղում հա՛մարյա անշարժ դառնալով օտար աչքից: Տագնապի հետաքրքիր ազդանշան ունեն կճղակավոր կենդանիները: Եթե այծքաղին կամ եղջերուին գիշատիչը հանկարծակիի է բերում և մահացու վախեցնում է, կամ վտանգից փախչելով՝ կենդանին կորցնում է ուժերը, նա հատուկ խունկի հոտ է արձակում: Այն օգտակար է և՛ գիշատչին, և՛ զոհին: Շնագայլերը ուշադրությունը կենտրոնացնում են խուճապահար կենդանուն: Դա ձեռնտու է: Այծքաղերի հոտի մեջ միայն մեկ զոհ կլինի: Այդպիսի ազդանշանի բացակայության դեպքում շնագայլերը շարից ավելի ջանք կթափեն և մեկի փոխարեն մի քանի կենդանի կսպանեն:



Վտանգի ազդանշանները շատ կենդանիների համար, այսպես ասած, «միջազգային բնույթ» ունեն: Օրինակ, փոկը, ծովագռավի տագնապալից ճիչը լսելով, ջրի տակն է սուզվում: Ագռավի կամ կաչաղակի ճիչը աղետի ազդանշան է անտառի բոլոր բնակիչների համար: Ծառ կենդանիների լեզուների մասին մինչև հիմա գիտնականները դեռ ոչինչ չգիտեն: Երևի շատերին է վիճակվել դիտել փոքրիկ ձկնիկների վտանգի համաձայնեցված շարժումները, երբ հարյուրավոր կամ հազարավոր ձկնիկներ միաժամանակ բարդ տեղաշարժ են կատարում՝ միանգամից շուռ գալով դեպի հարկավոր կողմը: Գիտնականները դեռ չեն պարզել, թե ինչպես են նրանք իրար հետ համաձայնվում, ով է ազդանշանը տալիս: Հնարավոր է, որ նրանք են հանդիսանում էլեկտրական իմպուլսները: Հետաքրքիրն այն է, որ այս լեզուն միջազգային է: Գիշատիչ ձկներ կան, որոնք թաքնվում են մեծ, խաղաղ ձկների վտառներում: Նրանք նույնպես համաձայնեցված ձևով կրկնում են վտառի մյուս անդամների գործողությունները: Այդ քանը նրանց հնարավորություն է տալիս աննկատ կերպով մոտենալ ավելի փոքր ձկներին կամ խեցեմորթներին:

Ինչպես տեսնում եք, մարդիկ կամաց-կամաց տիրապետում են կենդանիների լեզվին: Իսկ գազանները ու թռչունները հասկանու՞մ են արդյոք մարդկային լեզուն: Իհարկե, կարող են, դժվար չէ նրանց սովորեցնել: Ամեն մի շուն, օրինակ, սիրով է կատարում իր տիրոջ հրամանները:

*Թարգմ. Ա. [illegible]*







## ՀՈՄԵՐԱԿԱՆ ԾԻԾԱՂ (ՔՐՔԻՋ)

Հին Հունաստանի լեգենդար կույր աեդը՝ (երգիչ, ասացող) մեծ Հոմերոսը «Իլիական» և «Ոդիսական» հանճարեղ պոեմներում վառ ու աշխույժ լեզվով, հզոր կերպարներով նկարագրել է այն, ինչին անկեղծորեն հավատացել է ինքը. նկարագրել է հունական աստվածների կյանքը նրանց երկնային օթևանում, ամպերով ծածկված Օլիմպոսի գագաթին:

Հույների աստվածները նման էին մարդկանց, մարդկային նույն հատկությունները ունեին, միայն թե խիստ չափազանցված:

Ցավից գոռալիս նրանք անտառները էին ցնցում, իսկ երբ հնչում էր նրանց աստվածային ծիծաղը, երկիրը երերում էր: Ահա հենց այս հզոր քրքիջը, ինչպես և ամեն մի անզուսպ ծիծաղ այդ ժամանակներից ի վեր անվանում ենք «հոմերական», որովհետև ամենից լավ դա նկարագրել է Հոմերոսը:

## «ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ՝ ԱՅԴ ԵՍ ԵՄ»

**1655** թվականին ազնվականության, քաղաքացիների և հոգևորականության ներկայացուցիչներից կազմված ֆրանսիական պառլամենտը պահանջեց, որ Լյուդովիկոս XIV-ը փոխի իր քաղաքականությունը:

— Ինչո՞ւ,— զարմացավ ու խոժոռվեց թագավորը:

— Որովհետև դա հակասում է պետության շահերին,— եղավ պատասխանը:

— Պետությունը այդ ես եմ,— նետեց ամբարտավան արքան:

Պառլամենտը նահանջեց բարձրյալի կամքի առաջ:

Պատմաբանները կասկածում են, թե ասվել է այդ խոսքը: Բայց, ինչպես ասում են, եթե դա նույնիսկ սուտ է, ապա հորինված է հիանալի. ֆրանսիական արքաները հենց այդպես էին պահում իրենց: Իսկ Լյուդովիկոսի այդ խոսքը, թեկուզ և հորինված, տարածվել է աշխարհով մեկ: Մենք դա կրկնում ենք ամեն անգամ, երբ ուզում ենք ներկայացնել ինքն իր անձին սիրահարված մեկին, որ պարզամտորեն իրեն համարում է ողջ հասարակության ամենակարևոր դեմքը:

## ՎԱ՜Յ ՊԱՐՏՎՈՂԻՆ (VAE VICTIS!)

Մեր թվարկությունից առաջ 390 թվականին նվաճելով գոռոզ Հռոմը, գալլիացիների առաջնորդ Բրեննը հազար ֆունտ ոսկի ռազմական հարկ դրեց նրանց վրա:

Վճարելու ժամանակ հռոմեացիներին շատ ծանր թվացին ոսկին կշռելու համար հաղթողների բերած կշռաքարերը:

Նրանք հրաժարվեցին վճարել: Բայց նվաճողը իր ծանր սուրը կշեռքի նժարին նետելով՝ բացականչեց. «VAE VICTIS!», այսինքն. «Վա՜յ պարտվողին», և հարցը վճռվեց:

Բազմիցս կրկնվել է այդ անողորմ խոսքը դաժանաբարո հին աշխարհում:

Բազմիցս վայրագ նվաճողները «սուրը նետել են կշեռքի նժարին», այսինքն՝ ուժով հարկադրել են ենթարկվել իրենց կամքին:

## ՊԱՏԱՆԻ ՏԵԽՆԻԿՆԵՐԻ ԿԱՅԱՆԸ



ՌՈԲՈՏ. (Երևանի պատանի տեխնիկների կայան)

Ներս մտնելուն պես քեզ զգում ես մի արտասովոր միջավայրում: Քայլող ռոբոտներից, ապա ինքնաթիռներից, փոքրիկ ուղղաթիռներից ու այլ սարքերից կարծես աներևույթ մի ուժ է շարժում, մի գաղտնի ուժ, որը միայն երեխաներին է հայտնի:

Կայանը հիմնադրվել է 1940 թվականին: Այստեղ գործող մոդել-լային, էլեկտրատեխնիկական, ռադիոյի, քիմիայի, հմուտ ձեռքերի, տիեզերա-հրթիռամոդելային և ֆոտո խմբակների պարապմունքներին մասնակցում են շուրջ 250 աշակերտներ: Նրանց պատրաստած մոդելները երեք անգամ պարգևատրվել են Մոսկվայի Ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի առաջին կարգի դիպլոմով, իսկ անցած տարի նվաճեցին ցուցահանդեսի «Պատվո դիպլոմը»:

Սպանդարյանի շրջանի պատանի տեխնիկների կայանի սաների պատրաստած «անթելը» հեռախոսները, որոնց մասին «Մոդելիստ կոնստրուկտոր» ամսագիրը անցած տարի գովեստով էր խոսել, այժմ էլ գործում են անխափան: Այդպիսի ամեն մի հեռախոսը կարող է մինչև 200 մետր հեռավորության վրա կապվել նույնատիպ յոթ հեռախոսների հետ: Այս գյուտը մեծ հետաքրքրություն

առաջացրեց Միության տարբեր քաղաքների պատանիների շրջանում:

Կայանը հաճախակի մասնակցում է համամիութենական մրցումների և միջազգային ցուցահանդեսների: Անցած տարի Նովո-Կույբիշևսկում տեղի ունեցած ավիամոդելիստների համամիութենական մրցումներում Հայաստանի պատանիները գրավեցին մրցանակային երրորդ տեղը:

Կենտրոնական կայանում պատրաստված «Վոստոկ» տիեզերանավի պատճենահանված մոդելը ցուցադրվել է Ճապոնիայի Օսակա քաղաքում բացված Էքսպո-70 ցուցահանդեսում: Իսկ Լենինականի պատանի տեխնիկների պատրաստած լուսնագնացը ցուցադրվեց Մոնղոլիայում կազմակերպված միջազգային ցուցահանդեսում և այնուհետև նվիրվեց Ուլան-Բատորի նորակառույց պիոներպալատին:

Ինչպես հայտնի է, անցած տարի հուլիսին տեղի ունեցավ սովետական «Սոյուզ» և ամերիկյան «Ապոլլոն» տիեզերանավերի համատեղ թռիչքը: Կայանի սաները պատրաստել են մի հետաքրքիր սարք, որը դեկորացիաներով պատկերում է այդ երկու տիեզերանավերի թռիչքն ու կցումը տիեզերքում: Երբ մակետի լույսերը հանգչում են, երկրի վրա իջնում է գիշերը, վառվում, բոցկլտում են աստղիկները, երկնակամարում պտտվում է լուսինը, իսկ նրա շուրջը փոքրիկ արհեստական արբանյակը, քիչ այն կողմ իր պտույտներն է գործում Սատուրն մոլորակը: Այս խորհրդավոր երկնակամարում իրար են մոտենում տիեզերանավերը, կցվում, ապա դանդաղ անջատվում և շարունակում իրենց թռիչքը տարբեր ուղղություններով:

Կայանն իր սաներին օգնում է ճիշտ ընտրել այն մասնագիտությունը, որին նվիրվելու է: Կայանի նախկին սաներից շատերը դարձել են ֆիզիկոսներ, տեխնիկական, ֆիզիկա-մաթեմատիկական գիտությունների թեկնածուներ, սպորտի վարպետներ, մարզիչներ: Նրանք սիրով և երախտագիտությամբ են հիշում կայանը, իրենց պատանեկան տարիների երազանքով, մարզական առօրյայով և հետաքրքրություններով լեցուն օրերը:

*ՍԵՐԳԵՅ ՎԱՐԴԱՆՅԱՆ*



ԱԵՐՈՍԱՀՆԱԿ (Լենինականի պատանի տեխնիկների կայանից)




Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 3 մարտ 1976 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

---


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԽԱՆԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽՈՒՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆԶՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐԳԱՐՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՐԱՏ-ՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96

ՎՖ 00092: Պատվեր 255: Տպաքանակ՝ 73906: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 9/III 1976 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մնացականյանի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 10 Կ.

ԽԱՉԻԿ ՀՈՒԼՅԱՆ

# ՔՈԹՈԹԸ ՄՐՍՈՒՄ ԷՐ...

(Գ. ԼԱԴՈՆՇՉԻԿՈՎԻՑ)

Ճռճռում էր ցուրտը դրսում,
Խեղճ Քոթոթը շատ էր մրսում:

Ուզեց մտնել միջանցքը տաք,
Սակայն դուռը ծածկված էր, փակ:

Թաթը պարզեց նա բռնակին.
— Բացվի՛ր, դռնա՛կ,
Բացվի՛ր, դռնա՛կ:
Ես ճռվաղ չեմ,
Ոչ էլ լուսան:
Ես Քոթոթն եմ,
Բարի գազան:
Ցուրտը տարավ
Ականջս ու քիթ,
Թող տաքանամ
Ներսում մի քիչ:

Ճռռաց դուռը խռպոտ-մռպոտ.
— Ծո՛ւ-ում, նե՛րս արի, Մրսկա՛ն
Քոթոթ:

Նկ. ՀԱՅԿԱԶՈՒՆ ԽԱՉԱՏՐՅԱՆԻ

ԻՆԴԵՔՍ 77806